# ՀՈՂԱՄԱՍԸ ՄԵՐ ԾԱՂԿՈՒՆ

*ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ*

*Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ*

Արևի հետ ոսկեհեր,
Առավոտյան զիլ երգով,
Մենք գալիս ենք դաշտը մեր
Եվ աշխատում եռանդով:

Մի տեղ ծառ ենք տնկում նոր,
Մի տեղ սերմեր ենք ցանում...
Ու մեր կանչից սար ու ձոր
Խոր քնից են արթնանում:

Առաջ քամին էր փչում,
Փոշին այստեղ՝ մինչ երկինք.
Հիմա դպրոց են կանչում
Մեզ հավքերը երգեցիկ:

Դաշտը դարձավ կանաչ ծով,
Սաղարթ հագան թուփ ու ծառ.
Եվ կարդացինք մենք փորձով
Մեծ գիրքը մեր բնության:

Մի թիզ անգամ մեր բակում
Չենք թողնի մենք ամայի...
Հողամասը մեր ծաղկուն
Թող բոլորին հմայի:

Եկեք բոլորդ մեզ հետ՝
Այգի գցենք ու անտառ.
Ծաղիկներով բուրավետ
Բացենք ամեն ճանապարհ:






*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 10

ՀՈԿՏԵՄԲԵՐ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Պատանի տեխնիկների կայանից Գ. Սերֆինյանը և Ա. Ռուսյանը պատրաստվում են պատանի տեխնիկների համամիութենական ցուցահանդեսին:

*Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

# ՊԱՏԱՆԻ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

Ռ. ԱԲԱԼՅԱՆ

Ֆոտո՝ Վ. ՍԻՎՈՅԱՆԻ

— Ասյա՛, Մանա՛ն, Համի՛կ, Ալվա՛րդ, եկեք այստեղ,— ուրախությունից և վազելուց գրեթե շնչասպառ բացագանչեց Երջանիկ Ենոքյանն ու ձեռքով արեց ընկերուհիներին։ Բոլորը մոտեցան Երջանիկին և անհամբեր, հարցական նայեցին նրան։

— Ի՞նչ է պատահել, ինչո՞ւ ես այդպես կարմրել,— հարցրեց Մանանը։

— Սպասեցե՛ք, սպասեցե՛ք, մի քիչ հանգստանամ՝ հետո։

Երջանիկը հևում էր. ամբողջ դեմքը ողողվել էր քրտինքով։ Երբ վերջապես հանգստացավ, խորհրդավոր հայացքով նայեց չորս կողմը և ասաց.

— Գնանք։



Մանան Միքայելյան

Նրանք արագ քայլերով դուրս եկան գյուղից։

Աղբյուրի շուրջը փռված մարգագետինը ծածկվել էր թավիշ կանաչով։ Գառնածաղիկն արդեն աչիկներն էր բացել։ Գարնան արևի տակ բաց կարմիր գույն էին ստացել ղանգակի բարակ, նուրբ թերթիկները։ Ամբողջ շրջապատը լցվել էր ծիծեռնակների ու ճռնճռուկների ծլվլոցով։

— Գիտե՞ք ինչ. դպրոցի բակում դիրեկտորն ու կոլտնտեսության նախագահ ընկեր Սարգսյանը խոսում էին։ Ես պարզ լսեցի, թե ինչ ասաց նախագահը։ — «Եթե դպրոցի աշակերտները վերցնեն հորթերի շեֆությունը, շատ լավ կլինի»։ Դիրեկտորն էլ նույն բանն ասաց։ Ես էլ վազեցի, որ ձեզ ասեմ։ Հը՞...

Աղջիկներն իրար նայեցին։ Մանանը զարմացել էր, Համիկը ծիծաղում էր, Ասյան՝ տարակուսել։

— Դե՛, ի՞նչ եք ասում, հենց հիմա չգնա՞նք ընկեր Սարգսյանի մոտ,— անհամբերությունից ոտքերը տեղում դոփելով հարցրեց Երջանիկը։

— Գնանք,— վճռականորեն ասաց Համիկը։

— Իսկ... իսկ դասերին չի՞ խանգարի։

— Դե՜, այդ արդեն մեզանից է կախված, Ասյա՛,— լուրջ ու մտածկոտ ավելացրեց Մանանը.— եթե չծուլանանք, և՛ լավ կսովորենք, և՛ կխնամենք հորթերը։ Բայց եկեք առաջ ընկեր Սիմոնյանի մոտ գնանք, տեսնենք՝ նա ի՞նչ կասի։

Այսպես, չորս տարի առաջ Ախտայի շրջանի Ցանտան գյուղի դպրոցի մի խումբ պիոներներ, բնագիտության դասատու Սիմոնյանի ղեկավարությամբ, ստանձնեցին կոլտնտեսության անասնապահական ֆերմայի մատղաշների շեֆությունը։

Հետաքրքիր էր երեխաների աշխատանքը։ Ամեն օր, դասերից հետո, նրանք մտնում էին հորթանոցը, մաքրում, կերակրում մատղաշներին։ Իրենց ժամանակի մեծ մասը, իհարկե, նրանք տրամադրում էին դասերը պատրաստելուն։ Կոլտնտեսության վարչության նախագահը սկզբից զգուշացրեց բոլորին։

— Ա՛յ, եթե մեկն ու մեկդ «2» գնահատական ստացաք, էլ հորթանոցի երես չեք տեսնի։

Ամեն ինչ հաջող էր գնում։ Հորթանոցում աշխատող կոլտնտեսուհիների գործը հեշտացել էր, իսկ մատղաշների խնամքը՝ բարելավվել։





Անցան օրեր, ամիսներ, անցավ երեք տարի։ Մատղաշների երեք սերունդ զգաց պատանի պիոներների խնամքը։ Ամեն տարի նոր հորթ ընդունելիս, կշռում էին։ Նույնիսկ ամենախոշոր հորթերի քաշը 30 կիլոգրամից չէր անցնում, իսկ հաջորդ գարնանը, երբ հանձնում էին ֆերմային, երեխաների խնամած ամեն մի հորթի քաշն արդեն հասնում էր 150 կիլոգրամի։ 1952 թվականին Մանան Միքայելյանն իր խնամքին հանձնված հորթի քաշը 6 ամսում 16 կիլոգրամից հասցրեց 163 կիլոգրամի, իսկ անցյալ տարի մի ուրիշ հորթի քաշը հասավ 198 կիլոգրամի։ Ալվարդ Պողոսյանի խնամած հորթի քաշը հասավ 168 կիլոգրամի։

Կարծում եք թե հե՞շտ էր և՛ հորթերին խնամել, և՛ պատրաստել դասերը. ոչ, հեշտ չէր։ Բայց պիոներները պատրաստ էին հաղթահարելու բոլոր դժվարությունները։ Ոչ մի բան նրանց չէր վախեցնում, ո՛չ գարնան անձրևը, ոչ էլ ձմռան բուքը։ Սիմոնյանն անձամբ ստուգում էր պիոներների օրվա ռեժիմը և երբեք չէր խնայում, երբ մեկն ու մեկը խախտում էր այն։

— Լավ աշխատելու համար պետք է գործը սիրել,— ասում էր դասատուն։

Ցանտանի պիոներներն իրենց գործը սիրում էին։ Ա՛յ թե անհանգստանում էին, երբ հորթերից որևէ մեկը հիվանդանում էր..

Մի անգամ Ասյայի «Լանգետ» անունով հորթը հիվանդացավ։ Ասյան շատ տխրեց, քիչ էր մնում լաց լիներ. իսկ մի ծեր կոլտնտեսական նրան ձեռք առավ.

— Դե՜, ի՞նչ ես քիթդ կախել, հորթ է, էլի, կհիվանդանա էլ, կլավանա էլ։

— Ինչպե՞ս թե,— փնչացրեց Երջանիկը,— մեղք չէ՞ հորթը, ախր տանջվում է...

Իսկ ծերունին բեղի տակ ժպտաց և գրկեց երեխաներին։

— Ա՛յ, ապրեք, իմ բալիկնե՛ր. իսկ ես էլ կարծում էի, թե աշխատում եք հենց այնպես, հավասի համար։

Դրանից հետո, երբ երեխաները դժվարության էին հանդիպում, վազում էին նրա մոտ։

— Պապի՛, այս ինչպե՞ս անենք...
— Պապի՛, այն ինչպե՞ս անենք...

❊❊❊

Մի օր էլ պատանի անասնապահները կանգնեցին դպրոցի կոմերիտական կազմակերպության կոմիտեի անդամների առջև։ Կոմերիտմիության մեջ ընդունվելու համար



Ալվարդ Պողոսյան

դիմումներ էին տվել՝ Ասյան, Երջանիկը, Հասմիկը և մյուսները։

— Արժանի են,— ասացին կոմիտեի անդամները,— պետք է ընդունել։ Ամբողջ երեք տարի նրանք խնամել են կոլտնտեսության բոլոր մատղաշներին, խնայել մեծ քանակությամբ աշխօր...

Ո՞վ կարող է չափել պատանու կամ աղջըկա ուրախությունն այն պահին, երբ նա դուրս է գալիս կոմերիտական ժողովից, որտեղ ավագ ընկերները նրան ընդունել են Լենինյան փառապանծ կոմերիտմիության շարքերը։ Այդ օրը բոլորն էլ այնպե՜ս ուրախ ու երջանիկ էին, ինչպե՜ս սրտանց էին շնորհավորում իրար... Չէ՞ որ ամեն մի պատանու և աղջկա երազանքն է՝ լինել կոմերիտական։

Ցանտանի նոր կոմերիտականներին մի նոր ուրախություն էլ էր սպասում։

Մի օր, կեսօրին, երբ նրանք դարձյալ հորթանոցում խնամում էին մատղաշներին, ներս մտավ կոլտնտեսության վարչության նախագահը։

*— Բարև, ընկե՛ր կոմերիտականներ,— ասաց նա,— ինչպե՞ս են գործերը։*

*— Լավ...*

*— Շատ լավ...— այս ու այն կողմից բացագանչեցին պատանիները։*

*— Աշխատո՞ւմ եք, հա՞, հիանալի է, այսպիսի աշխատանքը փառքի ճանապարհն է...*

*Նախագահն ինչ-որ բան էր ուզում ասել, բայց դիտմամբ ուշացնում էր. այդ շատ լավ էին զգում բոլորը։*

*— Իմ պատանի բարեկամնե՛ր, ես ուզում եմ ձեզ շնորհավորել մեծ պատվի համար։*

*Բոլորը լարված ուշադրությամբ սկսեցին լսել նախագահին, իսկ նա շարունակեց.*

*— Մանանը և Ալվարդը հաստատվել են Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսի թեկնածուներ...*

*Երջանկության ժպիտ փայլեց բոլորի դեմքին։*

*— Ի՜նչ լավ է...*

*— Հրաշալի՜ է...*

*— Ալվարդն ու Մանանը կգնան Մոսկվա։ Սա դեռ սկիզբն է,— ավելացրեց նախագահը,— այս տարի կգնան Մանանն ու Ալվարդը, իսկ հետո՝ Երջանիկը, Ասյան և մյուսները։*

*— Կաշխատենք արժանանալ,— ժպտալով ասաց Երջանիկը։*

*Մոսկվա՜... Որքա՜ն են երազել պատանիները մեր Հայրենիքի մայրաքաղաքի մասին։ Բայց, ֆերմայում աշխատելիս ոչ մեկի մտքով չի անցել՝ աշխատել Մոսկվա գնալու համար։ Դե, մի՞թե սովետական մարդիկ դրա համար են աշխատում, իհարկե, ոչ։ Միլիոնավոր մարդիկ աշխատում են Հայրենիքի բարգավաճման համար, ժողովրդի համար։ Իսկ Հայրենիքը անձնվեր աշխատանքը միշտ էլ բարձր է գնահատում. այնպես, ինչպես Ցանտանի պատանիների աշխատանքը։*



Ասյա Սարգսյանը և Երջանիկ Եռոֆյանը իրենց խնամած հորթերի հետ։

# ՏՐԱԿՏՈՐԻՍՏԸ

*ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ* *Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ*

Դեռ սարերում արեգակը
Շողերն իր չի տարածել,
Տրակտորիստ Արմենակը
Վաղուց գործի է անցել։
Նա երգելով դաշտում ազատ
Հողն է հերկում հայրենի,
Հովն է խառնում մազերն առատ,
Երգը տանում է քամին։
«Հանդերն եմ վարում,
Ակոսներ շարում.
Քաղցր ես ու դյութող
Դու հայրենի հող։
Փովեր անհամար
Ակոսներ շար-շար,
Որ մյուս տարի
Բերքը ավելի
Հորդի, ծովանա,
Կյանքը լիանա»...

Արմենակը սուր խոփերով
Սև հողի կուրծքը պատռեց,
Ու փռվեցին խիտ շարքերով
Ակոսները խոր ու մեծ:
Աշնան խոտերն անհետացան,
Անցան գիրկը մայր հողի,
Ասես խավար գիշերն անցավ՝
Սևացավ դաշտը դեղին.
Անտառներից քամին երգով
Տերևները դաշտ բերեց,
Այստեղ, այնտեղ, անտես ձեռքով,
Ակոսները զարդարեց:
Սև ցելերին երամ-երամ
Իջան անթիվ թռչուններ,
Երգով, խաղով գյուղից եկան
Մի խումբ կայտառ մանուկներ:
Ու վազում են ոգևորված,
Ուրախանում են հեռվից.
— Տրակտորը քշի՛ր կամաց,
Չենք հասնում քո հետևից...



Մանուկները այսպես գալիս,
Աղմկում են բարձրաձայն.
— Ա՛յ թե լինենք տրակտորիստ,
Հերկենք դաշտերն անսահման...

# ՎԱՐՈՒԺԱՆԻ ԵՐԱԶԱՆՔԸ

Մ. ՕՎՉԻՆՆԻԿՈՎ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Ալեքսան Վարդանյանի տրակտորային բրիգադայից ես վերադարձա ոտքով: Անցնելով Սևան տանող խճուղին, սկսեցի իջնել դեպի Ախտա: Այդտեղ տեսա, որ ձախ կողմում, թավշյա կանաչով ծածկված բլրակի վրա, արածում է մի սպիտակ հորթ: Նրանից մի փոքր հեռու կանգնած էին շագանակագույն մի ուլիկ և մի սև գառնուկ: Նրանք մռութները կանաչի մեջ թաղած, ասես մրցելով իրար հետ, արագ-արագ պոկում էին ու ծամում թարմ և հյութալի խոտը: Նրանց կողքին, մեծ ու հարթ քարի վրա նստած էր մի թուխ տղա՝ ծնկները գրկած և ծնոտը նրանց վրա դրած: Նա հագել էր հոր մեծ բաճկոնը: Գլխաբաց էր: Մեղմ քամին խաղում էր նրա գանգուր մազերի հետ: Խոշոր ու սև աչքերով նա նայում էր հեռուն, Թեղենիս լեռան կողմը, որի ձյունածածկ գագաթը մայր մտնող արևի ճառագայթների տակ փայլփլում էր արծաթի պես:

— Բարև, տղա՛ ջան:

— Բարև, քեռի՛,— ոտքերը պարզելով ու տեղից վեր կենալով, պատասխանեց նա և հետաքրքրությամբ նայեց ինձ:

— Այստեղ մի ճամփա չկա՞, որ ինձ գյուղ հասցնի:

— Ա՜յ, ներքևում. առվի ափով,— աշխույժ պատասխանեց տղան.— այդ ճամփով որ գնաք, դուրս կգաք խճուղի:

Արևը շոյում էր իր ջերմությամբ: Մաքուր ու ջինջ օդում լսվում էին ամենաթույլ հնչյուններն անգամ: Մարդ չէր ուզում հեռանալ:

— Սա քո՞ տնտեսությունն է,— ցույց տալով մատղաշներին, հարցրի ես:

— Մեր ընտանիքինն է,— ոտքից գլուխ դիտելով ինձ՝ պատասխանեց նա:

Ես նստեցի քարին ու ծխեցի: Տղան էլ նստեց:

— Սովորո՞ւմ ես:

— Վեցերորդում,— դանդաղ ասաց տղան:

— Քանի՞ տարեկան ես:

— Տասներեք:

Նա պատասխանում էր պարզ և ազատ, կարծես, թե հին ծանոթի հետ էր խոսում: Միայն թուխ աչքերը մերթընդմերթ հառում էր ինձ վրա:

— Քննություններդ տվե՞լ ես:

— Այո։

— Հետո՞,— կողքից դիտելով պատանու դեմքը, հարցրի ես.— ի՞նչ ստացար։

— Հինգ։

— Չէ՛ մի՝ հի՛նգ...— ժպիտս զսպելով ասացի ես։

Տղան որսաց իմ կասկածամտությունը և արագ ոտքի կանգնեց։

— Դուք այստեղ նստեք, քեռի՛, ես իսկույն կգամ։

— Ո՞ւր ես գնում։

— Ա՜յ այնտեղ է՝ մեր տուն,— ցույց տվեց նա դեպի ցած, առվի կողմը, որի ափին կոլտնտեսության նոր շենքերն էին.— ես գնամ, և՛ օրագիրս բերեմ, և՛ տարեկան գնահատականներս...

Եվ առանց ինձ նայելու ավելացրեց.

— Ախր դուք չեք հավատում...

Այն վճռականությունը, որով տղան վեր կացավ տեղից, ինձ համոզեց, որ նա ճիշտ է ասում։ Ես բռնեցի նրա ձեռքն ու ցույց տվեցի քարը։



...Քարի վրա նստած էր մի բուխ տղա...

— Նստիր, նստիր, հավատում եմ։

Եվ տղային նստեցրի իր տեղը։

— Գերազանցիկ լինելը դժվա՞ր է։

Տղայի աչքերում զարմանք ցոլաց։

— Ինչո՞ւ է դժվար, շատ հեշտ է։

Ես մտածեցի, որ տղան պարծենում է։

— Կյանքում ոչ մի լավ բան հեշտ չի տրվում։ Լավը լավ է հենց նրա համար, որ ձեռք ես բերում աշխատանքով, համառությամբ։

— Այդ ես գիտեմ,— կիսաձայն ասաց պատանին, նայելով իր կոշիկների տրորված ծայրերին։

— Ի՞նչ գիտես. չէ՞ որ ամեն ինչ քեզ համար հեշտ է, նույնիսկ գերազանց սովորելը։

— Դժվարը հետո կլինի,— հանգիստ պատասխանեց նա։

— Բարձր դասարաններո՞ւմ։

— Ո՛չ, դպրոցից հետո։

— Ինստիտուտո՞ւմ։

Մի քիչ լռելուց հետո, տղան վերցրեց մի քար, շուռումուռ տվեց, ժպտաց, ու նետեց մի կողմ։

— Ինստիտուտից հետո...

Ես ուզեցի իմանալ, թե ինչի մասին է նա մտածում և հարցրի.

— Իսկ դու ի՞նչ ես որոշել դառնալ։

Նա շեղակի նայեց ինձ և հայացքն ուղղելով հեռավոր լեռներին, պարզ ասաց.

— Հեռավոր նավարկության նավապետ։

Դժվար էր հասկանալ, թե ծովային դառնալու ցանկությունը ինչպես էր ծագել այդ պատանու հոգում, երբ նա ծնվել է Հայաստանի լեռներում, ծովերի անափ տարածություններից հեռու։ Պարզ էր, որ տղան ծովագնացների արշավանքների մասին շատ գրքեր էր կարդացել, նավապետների սխրագործությունները պատկերող կինոնկարներ էր տեսել։

— Իսկ ինչպե՞ս ես ուզում դառնալ նավապետ...

— Սովորելով, ինչպես սովորում եմ։

— Լավ ճանապարհ է,— համաձայնեցի ես,— գերազանցիկին ամեն տեղ ընդունում են։ Իսկ հետո՝ նավապետների դպրոց, հետո՝ ծովեր, օվկիանոսներ, նոր երկրների հայտնագործումներ...

— Բոլոր ծովերը, երկրներն ու կղզիները վաղուց գտնված են,— ցածրաձայն ընդհատեց նա.— ես ուզում եմ գտնել այն, ինչ չի գտնված... Ես պիոներ եմ, չէ՞...

— Իսկ ի՞նչն է, որ դեռ չի գտնված,— հարցրի ես։

Պատանին գլուխը բարձրացրեց և նայեց

երկնքին, որի կապույտից զնգուն գեղգեղանք էին սփռում արտույտները։

— Այնտեղ... այնտեղ անհայտ շատ բան կա։

Հետո գլուխը կախելով ու կռընկով թեթևակի գետնին խփելով, նա շարունակեց.

— Այստեղ՝ գետնի տակ էլ անհայտ շատ բան կա... Հետո՝ ինչպես անենք, որ անձրևը ուզած ժամանակը գա, քամին փչի այն ժամանակ, երբ հարկավոր է, հը՞...



— Նստիր, նստիր, նավատում եմ:

Ես լուռ էի։ Նպատակի այնպիսի պարզությունը և այնպիսի վճռականությունը, որով տասներեք տարեկան աշակերտը պատրաստվում էր կյանքի և գիտության հեռավոր նավարկության նավապետ դառնալ, որպեսզի բնության ուժերը մարդկանց ծառայեցնի, չէին կարող ինձ չզարմացնել։ Իմ առաջ կանգնած էր իսկական մի պիոներ, որը պետք է բաց անի նորը ապագայում, որի համար պատրաստվում էր նա գերազանց սովորելով։

— Ազգանունդ ի՞նչ է։

— Վարուժան Եղիազարյան,— պատասխանեց նա։

Ես սրտանց ու ամուր սեղմեցի փոքրիկ ձեռքը։

Տղայի աչքերում շողաց մանկական զուլալ ուրախությունը։



# ԿԱՐՄԻՐ ՎԶԿԱՊԸ

ԼՅՈՒ ԲԱՅ-ՅՈՒՅ
(Չինական նշանավոր գրող)

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

Մեր վաշտում մի բան կա, որը շատ են գնահատում բոլոր մարտիկները։ Դա մի կարմիր վզկապ է, պիոներական սովորական վզկապ։ Նրա վրա արյան մի փոքր բիծ կա, և անկյունը ծակված է սվինով։ Ես ուզում եմ պատմել, թե այդ վզկապն ինչպես է ընկել մեր վաշտը։

1950 թվականի հոկտեմբեր ամիսն էր։ Իհարկե, դուք բոլորդ էլ հիշում եք այդ ժամանակը։ Յալուցզյանի ափերի մոտ մոլեգնում էին պատերազմի բոցերը։ Մենք՝ ժողովրդական կամավորներս, որ հավաքվել էինք երկրի բոլոր կողմերից, գնացքով սլանում էինք այնտեղ՝ դեպի Յալուցզյան։

Լուսաբացին ես ննջել էի վագոնի անիվների համաչափ թխթխկոցի տակ։ Հանկարծ գնացքը դանդաղեցրեց իր ընթացքը։ Բացելով աչքերս, ես տեսա, որ իմ ընկերները խռնվել են վագոնի դռան մոտ։ Նրանց առջև կանգնած էր մեր դասակի հրամանատար Ջեն Ջժուն-ֆուն...

Ես նույնպես մոտեցա դռանը և վագո-

*նից դուրս նայեցի։ Առջևում տարածված էր արդյունաբերական մի խոշոր քաղաք։ Դա մի հրաշալի տեսարան էր։*

*Դոմնային վառարանների պայծառ բոցերը ճեղքում էին առավոտյան թանձր մշուշը։ Նեղ երկաթուղու վրա վազում էին քարածուխով բեռնված փոքրիկ վագոնները։ Աստղերի նման շողշողում էին բազմաթիվ էլեկտրական կրակներ։ Քիչ անց ծագեց արևը։ Նրա ճառագայթները, ինչպես լուսարձակներ, ցրեցին մշուշը։ Այդ սքանչելի տեսարանով հմայված, մենք հիացմունքից ծափ էինք տալիս և ուրախ աղաղակում։*

*Շուտով մեր գնացքը մոտեցավ կայարանին։ Կառամատույցն ու կայարանամերձ հրապարակը լիքն էին մարդկանցով, որոնք եկել էին դիմավորելու մեզ։ Օդի մեջ ծածանվում էին կարմիր դրոշակներ։ Հենց որ գնացքը կանգ առավ, և մենք ցած թռանք կառամատույց, մարդկային ալիքը շարժվեց դեպի վագոնները։ Նրանց առջևից, փոքրիկ հյուսքերը թափահարելով, վազում էին երկու*



...վզկապը մեկնեց հրամանատարին։

*աղջիկ։ Հասնելով մեզ, նրանցից մեկը փաթաթվեց մեր դասակի, իսկ մյուսը՝ 6-րդ ջոկի հրամանատարին։ Ես նկատեցի, թե ուրախությունից ինչպես էին փայլում ջոկի հրամանատարի աչքերը։ Նա մի քիչ կռացավ, և աշխույժ, վառվռուն աչքերով փոքրիկ աղջիկը փաթաթվեց նրա վզով։ Ավելի մոտենալով, ես լսեցի, որ հրամանատարը հարցեր էր տալիս աղջկան.*

*— Քո հայրը բանվո՞ր է։*

*— Այո, հին լեռնագործ է,— արագ պատասխանեց աղջիկը, ապա շարունակեց.— Քեռի՛, դուք Կորեա եք գնում կռվելու, պաշտպանելու մեր երջանիկ կյանքը։ Քեռի՛, ես ուզում եմ... ես կնվիրեմ ձեզ ինձ համար ամենաթանկ բանը՝ կարմիր վզկապս...*

*Այս խոսքերի հետ նա արձակեց պիոներական կարմիր վզկապը և մեկնեց ջոկի հրամանատարին։ Երբ մեկնելու ազդանշան տրվեց, ես էլ մյուսների հետ մտա վագոն։*

*Գնացքը դանդաղորեն հեռանում էր կայարանից։ Հրամանատարները կանգնած էին վագոնի դռան մոտ։ Նրանց ձեռներին կարմիր վզկապներ կային։*

*Ես մոտեցա ջոկի հրամանատարին և նստեցի նրա կողքին, ծղոտով լցված ներքնակի վրա և հարցրի, թե հրաժեշտի ժամանակ աղջիկն ի՞նչ ասաց։ Վզկապից չհեռացնելով հայացքը, դանդաղ, որ կարծես թե ուզում էր սրտի մեջ խորը կերպով տպավորել յուրաքանչյուր բառը, հրամանատարն ասաց.*

*— Աղջիկն ասաց. «Այս պիոներական վզկապը սիմվոլացնում է մեր Հայրենիքի պետական դրոշակը։ Նրա կարմիր գույնը ցույց է տալիս մեր զոհված հերոսների թափած արյունը։ Երբ դժվարության մեջ կընկնեք, նայեցեք այս կարմիր վզկապին և հիշեցեք մեզ։ Գիտցեք, որ մենք միշտ ձեզ հետ ենք»... Տեսնում ես, թե ինչպիսի՜ն են այժմ մեր երեխաները,— ավելացրեց նա։*

*Հրամանատարի վերջին խոսքերը ընդմիշտ մնացին իմ հիշողության մեջ։*

*Ես բառեր չեմ գտնում, որպեսզի նկարագրեմ այն ամենը, ինչ կատարվեց հետագայում...*

*Գիշեր էր, մութ ու անձրևային գիշեր։ Մենք անցանք Յալուցզյան գետի կամուրջի վրայով և մտանք կորեական երկիրը։ Կանգ առանք կամուրջից ոչ այնքան հեռու և երկար նայում էինք հայրենի ափերին։ Առջևում շողշողում էին ինչ-որ կրակներ։ Մենք գնացինք այդ կրակների ուղղությամբ։ Երբ*

մոտեցանք, տեսանք, որ գյուղ է վառվում։ Քամին բորբոքում ու կատաղի էր դարձնում կրակը։ Վառվող տներից մեկի կտուրը փուլ եկավ կրակի մեջտեղը։ Դեպի երկինք խոյացավ կրակե մի հսկայական սյուն։ Բոցերի կապույտ լեզուներն արդեն լափել էին տան մոտ կիտված, դեռևս չքամահարված հացահատիկը։

Վառվող գյուղի տեսքը ամեն մեկիս հոգում առաջ բերեց մի անասելի ծանր զգացում։ Մեր ջոկը կանգ առավ։ Մարտիկներն անխոս կանգնել էին գլուխները կախ։ Ես նայեցի հրդեհվող տան կողմը և ամբողջ մարմնով ցնցվեցի։ Գետնին ընկած էր մի մեռած մարդ. նրանից մի քիչ հեռու՝ մեկ ուրիշը։ Վառվող տան մոտ կանգնած էր կորեացի մի փոքրիկ տղա։ Նա գլխաբաց էր, բոբիկ, մարմինը ծածկված կանացի բաճկոնով։ Նա ձեռքերով փակել էր դեպի հրդեհն ուղղված երեսը, ուսերը հեկեկալուց ցնցվում էին։ Ես արագ վազեցի դեպի տղան և գրկեցի նրա ուսերը։ Նրա լացը խոցեց իմ սիրտը։ Ես չկարողացա թողնել նրան, թեև գիտեի, որ ետ կմնամ դասակից։ Նայում էի տղայի երեսին և փորձում էի հանգստացնել, ինչպես որ կարող էի։

Նա նորից շուռ եկավ և նայեց դեպի վառվող տունը։ Այդ ժամանակ մեկը թեթևակի խփեց իմ ուսին։ Ես ցնցվեցի և արագ ետ նայեցի։ Կողքիս կանգնած էր մեր դասակի հրամանատարը։ Այդ աշխույժ ու կենսուրախ ընկերոջ փոխարեն ես տեսա բոլորովին մի այլ մարդու։ Շրթունքները ամուր սեղմած, նա անշարժ կանգնել էր։ Հրդեհի բոցերով լուսավորված դեմքը սպիտակ էր ինչպես կավիճ, իսկ աչքերում զայրույթ էր վառվում։ Նրա ամբողջ հագուստը ծածկված էր փոշիով, գլխարկի տակից, ճակատի վրա, կախ էին ընկել մազերը։ Ես սպասում էի, որ հրամանատարը ինձ նկատողություն կանի, որ դասակից ետ եմ ընկել և սկսեցի արդարանալու խոսքեր մրմնջալ։ Բայց նա լուռ կանգնել էր և ոչ մի բառ չէր արտասանում։ Ես բաց արի ուսապարկս, որի մեջ պահվում էր իմ բաժին ուտելիքը և դրեցի տղայի գրպանը։ Հետո նորից գրկեցի նրան, հրաժեշտ տվեցի և գնացի հասնելու իմ ընկերներին։

Շուրջը մոլեգնում էր կրակի ծովը։ Բոցերի կարմիր լեզուները ճեղքում էին թանձր ծուխը։ Հեռվում լսվում էր պայթող ռումբերի խուլ որոտը։

* * *

Առաջին մարտից հետո մեր վաշտին տրվեց շատ կարևոր առաջադրանք, որի հաջող կատարումից էր կախված մեր ճակատամարտի բախտը։ Մենք աննկատելիորեն անցել



Նա ձեռքերով փակել էր... երեսը...

էինք ճակատային գիծը, անտառով դուրս եկել հակառակորդի թիկունքը և գրավել այն բարձունքը, որտեղից կարելի էր հսկել խճուղին...

Այդ ճանապարհով թշնամին սկսեց նահանջել։ Խլացնող դղրդոցով անցնում էին տանկեր, ինքնագնաց հրանոթներ, ավտոմեքենաներ։ Նահանջողներին օդից պաշտպանում էին ինքնաթիռները։ Մարդ պարզ կերպով հասկանում էր, թե ինչ է նշանակում հաճախ կրկնվող խոսքերը. «Պողպատի ու երկաթի պատերազմ է»։ Մենք անշարժ պառկել էինք և հայացքներս գամել նահանջող հակառակորդին։ Ես սրբեցի նշանացույցի վրայի փոշին և արագ նայեցի շուրջս։ Իմ

*կողքին պառկած էր 6-րդ ջոկի հրամանատարը։ Դասակի հրամանատարը գտնըվում էր աջ թևում։ Ջոկի հրամանատարը վերցրեց հակատանկային նռնակների մի կապոց և նետեց արկերով բեռնված թշնամու առաջապահ ավտոմեքենայի վրա։ Մեքենան պայթեց և փակեց ճանապարհը։ Նրա հետևից գնացող մեքենաները կանգ առան։ Օգտվելով դրանից՝ մենք ավտոմատների, հրացանների և գնդացիրների կրակով սկսեցինք հնձել թշնամու զինվորներին։*

*Փոքր ինչ ուշքի գալուց հետո, հակառակորդը հարձակման անցավ։ Մեր խրամատների վրա տեղում էին թշնամու ռումբերն ու արկերը։ Ինձանից ոչ հեռու մի արկ պայթեց, և ամեն ինչ կորավ ծխի մեջ։ Տեսադաշտից անհայտացավ նաև դասակի հրամանատարը։ Երբ ծուխը ցրվեց, ես նորից տեսա նրան։ Նա չոքել էր և բարձր ձայնով գոռում էր.*

*— Նայեցեք, ընկերնե՛ր, հակառակորդը ջախջախված է։ Հյուսիսից նրան քշում են մեր զորամասերը։ Մենք հակառակորդի ոչ մի զինվոր կենդանի չպետք է թողնենք։*

*Արկերի պայթյունից առաջացած ծուխը ծածկեց արևը։ Խճուղու վրա վառվում էին հակառակորդի տանկերն ու ավտոմեքենաները։ Ջոկի հրամանատարն անընդհատ կրակում էր։ Հանկարծ պայթած արկի բեկորը խփեց նրա կրծքին, և նա ընկավ խրամատի մեջ։ Այդ ժամանակ ես լսեցի ամբողջ ճակատով հարձակվող մեր զորամասի գրոհի ազդանշանը։ Մեր հրետանու արկերը պայթում էին նահանջող թշնամու բազմության մեջ։ Ընկերներս դուրս թռան խրամատներից։ Ես էլ նայեցի և սկսեցի կանչել դասակի հրամանատարին։ Բայց իմ ձայնը կորավ շրջապատի աղմուկի մեջ։ Այդ պահին ես տեսա ջոկի հրամանատարին։ Նա մի փոքր վեր բարձրացավ, գետնից վերցրեց հրացանը և նորից նստեց՝ թիկնելով խրամատի պատին։ Հետո վերնաշապկի գրպանից հանեց պիոներական վզկապը և ամրացրեց սվինի ծայրին։ Ապա ամբողջ հասակով կանգնեց, բարձրացրեց հրացանը, որի վրա ծածանվում էր կարմիր վզկապը։ Նա ինչ-որ բան գոչեց և նետվեց գրոհի։ Նրան հետևեցին մյուս մարտիկները։ Պիոներական վզկապը դարձավ մարտական դրոշակ և ոգևորեց մեզ։*

*Այս անգամ մենք թշնամու դեմ կռվեցինք ոչ այնպես, ինչպես առաջին մարտում։ Մենք վերջնականապես լռեցրինք թշնամու կրակակետերը, ջարդուփշուր արեցինք երկաթով ու բետոնով պատրաստված ամրությունները, ջախջախեցինք նրա տանկերն ու հրետանին, անխնա կերպով ոչնչացրինք հակառակորդի կենդանի ուժը։*

*Առանց դադարի մարտ մղելով, մեր կամավորական զորամասերը և կորեական ժողովրդական բանակը փոխեցին դրությունը կորեական ռազմաճակատում և հակառակորդին ետ շպրտեցին 38-րդ զուգահեռականից այն կողմ։*



*Խանգանի ափին ամրանալով մի բարձունքի վրա, մենք կանգնեցրինք թշնամու գրոհը։ Մենք գիտեինք, որ թշնամին եթե ճեղքի այդ պաշտպանությունը, մեր ռազմաճակատի համար մեծ վտանգ կստեղծվի։*

*— Որպեսզի կատարենք մեր պարտքը Կորեայի և մեր Հայրենիքի նկատմամբ, մենք պետք է պահենք այդ բարձունքը,— ասաց դասակի հրամանատարը։*

*Հինգ օրվա ընթացքում ետ մղեցինք թշնամու տասներեք գրոհ։ Վերջին օրը հակառակորդը հավաքեց այդ վայրում եղած իր բոլոր տանկերն ու ինքնաթիռները և սկսեց նոր՝ տասնչորսերորդ գրոհը։ Բռնկվեց մի կատաղի մարտ, մեր դիրքերը վերածվեցին կրակի համատարած ծովի։*

*Այդ մարտում ես ոչնչացրի հակառակորդի մի քանի զինվոր, որոնք մտել էին մեր խրամատները։ Ուժեղ կրակի տակ ես փորձեցի սողալով մոտենալ ջոկի հրամանատարին։ Այդ պահին պայթեց մի արկ։ Ես գլուխս վեր բարձրացրի, նայեցի հրամանատարի կողմը։ Սիրտս տագնապալի խփեց։ Նա ընկած էր խրամատի մեջ։ Ես վազքով մոտեցա և վեր բարձրացրի նրան։ Նա նայեց մթագնած աչքերով, բայց ձայն չհանեց։ Շուրջը թռչում էին արկերի բեկորները։ Ես իմ մարմնով ծածկեցի ջոկի հրամանատարին։ Այդ ժամանակ մի մարդ արագ վազե-*

լով մոտենում էր մեզ։ Նա ամբողջովին կրակի մեջ էր։ Հասնելով մեզ, նա թավալվեց դեպի և սկսեց հանգցնել վառվող հագուստը։ Հետո նա բարձրացրեց գլուխը և ձեռքերով շփեց իր երեսը։ Ես ճանաչեցի մեր դասակի հրամանատարին և անմիջապես գոռացի.

— Ընկե՛ր դասակի հրամանատար, 6-րդ ջոկի հրամանատարը վիրավորված է։

Դասակի հրամանատարը սողաց դեպի վիրավորը, շոշափեց նրա զարկերակը և մռայլվեց։ Ապա բարձրացրեց նրա գլուխը, դեմքը մոտեցրեց դեմքին և բարձրաձայն ասաց.

— Ընկե՛ր Ջժուն, ընկե՛ր Ջժուն։

Բայց ջոկի հրամանատարը չփոխեց իր դեմքի արտահայտությունը։ Քիչ հետո նա դժվարությամբ բացեց աչքերը և շշնջաց.

— Ինչպես են գնում գործերը... մեր դիրքերում։

— Մենք ամուր ենք պահում մեր դիրքերը,— բարձր ասաց դասակի հրամանատարը։

Այստեղ ես նկատեցի, որ ջոկի հրամանատարի դեմքին մի փոքր ժպիտ երևաց և անմիջապես մարեց։ Այդ ժպիտը նրա գիտակցության վերջին առկայծումն էր։ Դասակի հրամանատարը զսպելով աչքերից հոսող արցունքը, ջոկի հրամանատարի գրպանից սկսեց հանել զանազան իրեր՝ ծոցատետրը, շքանշանները, մեդալները, նամակները։ Նա հանեց նաև այս կարմիր վզկապը։ Վզկապը արյունոտ էր։ Դասակի հրամանատարը երկար նայեց վզկապին, ապա զգույշ ծալեց և դրեց իր գրպանը։ Հետո նա իր վերնաշապկի գրպանից հանեց իր մոտի կարմիր վզկապը և կապեց ջոկի հրամանատարի վզին։ Քամին ցրեց արկերի պայթյունից առաջացած ծուխն ու խանձահոտը։ Մեղմորեն փողփողում էին ջոկի հրամանատարի վզին կապած կարմիր վզկապի ծայրերը։

Սկզբում առիթ չի եղել պատմելու Հայրենիքի նկատմամբ ունեցած մեր սիրո ու զգացմունքների մասին և այդ մասին ասելու հարկ էլ չկա. դուք բոլորդ էլ լավ եք հասկանում այդ։ Բայց և այնպես ես մի քանի խոսք կասեմ այդ մասին։ Այն ժամանակվանից, երբ ընկավ մեր ջոկի հրամանատարը, դժվար բոպեներին ես հաճախ կրկնում էի այն աղջկա խոսքերը. «...Նայեցեք այս կարմիր վզկապին և հիշեցեք մեզ։ Գիտցեք, որ մենք միշտ ձեզ հետ ենք»։ Հիշելով այս խոսքերը, ես երդվում էի անել ամեն ինչ, որպեսզի մեր երեխաների գլխին այլևս չսուլեն արկի բեկորները։



...Նրացանի վրա ծածանվում էր վզկապը։

***

Անցած տարվա գարնանը, մեր դասակի հրամանատարը ընտրվեց Հայրենիք մեկնող դելեգացիայի կազմում։

Երբ նա նորից երևաց հայրենի Յալուցզյանի ափին, նրա սիրտը լցվեց աննկարագրելի հրճվանքով։ Գիշերը նրան գերում էին քաղաքների ու գյուղերի էլեկտրական բազմաթիվ լույսերը, իսկ ցերեկները՝ ֆաբրիկաների ծխացող ծխնելույզները, վազող գնացքները։ Դելեգացիայի հետ նա եղավ Պեկինում և երկրի շատ ուրիշ քաղաքներում։ Վերադարձի ճանապարհին նա նորից եկավ այն արդյունաբերական քաղաքը, որի մասին խոսվեց սկզբում։ Բանվորների խմբերը կայարանում նորից կարմիր դրոշակներով դիմավորեցին ժողովրդական կամավորներին։ Բանվորները խնդրեցին դասակի հրամանատարին, որ նա

զրույց անցկացնի տեղի դպրոցի աշակերտների հետ: Դպրոցն արդեն տեղավորված էր նորակառույց շենքում, որի պատերից դեռ գալիս էր թարմ տախտակների բուրմունքը: Մեծ լուսամուտներից արևի պայծառ ճառագայթները ողողել էին շենքի ներսը: Մանկական բազմաթիվ աչքեր նայում էին նրան: Դռների և լուսամուտների մոտ հավաքվել էին մեծահասակները և ժպտացող աչքերով նույնպես ուշադիր նայում էին զինվորականին: Դասակի հրամանատարը աշակերտներին պատմեց, թե կորեական ռազմաճակատում մենք ինչպես ենք մարտնչել թշնամու դեմ: Աշակերտները լսում էին շունչները պահած: Նրանց դեմքերի վրա կարելի էր կարդալ այն ապրումները, որ նրանք ունենում էին դասակի հրամանատարի պատմությունը լսելիս: Երբ դասակի հրամանատարը սկսեց պատմել ջոկի հրամանատարի հերոսական մահվան մասին, գրպանից զգուշությամբ հանեց կարմիր վզկապը և բարձրացնելով որպես սրբություն, ասաց.

— Փոքրիկ բարեկամնե՛ր, նայեցեք այս վզկապին:

Դասարանում լռություն տիրեց: Բոլորն իրենց հայացքները հառել էին վզկապին: Այդ ժամանակ հետևի շարքում նստած մի աղջիկ բարձրացավ տեղից և լուռ մոտեցավ դասակի հրամանատարին ու ասաց.

— Քեռի՛, այդ վզկապը ես եմ նվիրել նրան:

Դասակի հրամանատարը նայեց աղջկան և վերհիշեց, որ իր առջև կանգնած է հենց այն աղջիկը, որը երկաթուղային կայարանում փարվեց ջոկի հրամանատարին: Նա մի քիչ մեծացել էր: Բայց հրամանատարն անմիջապես ճանաչեց նրան վառվռուն դեմքից, խելացի ու համարձակ աչքերից: Աղջիկը վերցրեց արյան բծերով ծածկված կարմիր վզկապը և այնքան երկար նայեց, որ կարծես թե ուզում էր ընդմիշտ տպավորել իր հիշողության մեջ: Վերջապես նա վզկապը մեկնեց դասակի հրամանատարին և ասաց.

— Քեռի՛, նա ընկավ ինձ համար, մեզ բոլորիս համար...

Դասակի հրամանատարը երկար ժամանակ լուռ էր: Նա ուզում էր աշակերտներին ավելի շատ բան պատմել ջոկի հրամանատարի մասին...

— Փոքրիկ բարեկամնե՛ր,— ասաց նա,— ռազմաճակատում ամենադժվար րոպեներին մենք նայում էինք պիոներական այս կարմիր վզկապին, և նա մեզ հիշեցնում էր բոլորիդ մասին, մեր Հայրենիքի մասին, խոսում նրա գեղեցիկ ապագայի մասին:

*Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ*

# ԱՂՎԵՍՆ ՈՒ ՎԱԳՐԸ

*(Չինական առակ)*



Մի աղվես բռնեց վագրը մի անգամ.
Աղվեսը ասաց.— Լսիր, բարեկա՛մ,
Տեսնում եմ դու լավ ախորժակ ունես,
Միտքդ ուրիշ է... բայց սխալվում ես:
Աստված ինձ կարգեց գազանների տեր,
Իսկ դու փորձում ես հիմա ինձ ուտե՛լ.
Աստծու զայրույթից աշխարհ շուռ կգա,
Էլ չես ազատվի, արևս վկա:
Վագրը երկյուղից գույն տվեց առավ,
Սիրտը կրծքի տակ մի կում ջուր դառավ:
—Չես հավատում հա՞, այն դեպքում եղբայր,

Արի այս ձորից դուրս գանք մենք անտառ,
Կտեսնես ինչպես գազաններն ամեն
Ինձնից սարսափած հեռու կփախչեն:
— Շատ լավ,— որոշեց վագրը երկյուղից
Ու աղվեսի հետ դուրս եկավ ձորից:
Գայլ, արջ ու հովազ, երբ վագրին տեսան,
Գլուխներն առած սարերը փախան:
— Սխալվել եմ ես, ներիր ծառայիդ,—
Ասաց ու փախավ վագրը միամիտ:
Սա հին առակ է, բայց միտք ունի խոր՝
Ուժի հետ մեկտեղ խելք է հարկավոր:

*ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ*

# ՄԵՂՈՒՆԵՐԸ

*Ա. ՇԱՀԻՆՅԱՆ*

*Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

Սոսն ու Վանին եղբայրներ էին, բայց արտաքինով իրար բոլորովին նման չէին։ Ոչ միայն արտաքինով, այլև բնավորությամբ էլ տարբերվում էին միմյանցից։ Սոսը մեծ էր Վանիից և գուցե դրանից էր, որ ավելի հանգիստ բնավորություն ուներ։ Վանին դրա հակառակն էր. մի րոպե հանգիստ մնալ չէր կարող։ Դրա համար էլ այն օրվանից, ինչ նրանք գյուղ եկան, Վանու հետ միշտ մի փորձանք էր պատահում։ Կամ ցանկապատի վրայից թռչելիս էր վայր ընկնում, կամ եզներն էին հարու տալիս, և կամ հովիվների շներն էին նրա վրա հարձակվում։

Մի անգամ տատը կանչեց Սոսին ու Վանիին և նրանց մի-մի պարկ տալով ասաց.

— Սրանք շուտ պապին հասցրեք, որ կալից դարման բերի։

Տղաները պարկերը վերցրին ու տանից դուրս եկան։ Նրանք գնում էին գյուղամիջով ձգվող նեղ ու անհարթ ճանապարհով։ Եվ դեռ երկար կշարունակեին գնալ, եթե Վանին եղբորը չկանգնեցներ։

— Սո՛ս, ա՛յ Սոս, մի այն կողմը նայիր, սարյակի բներ են նրանք, ինչ են...,— ասաց Վանին մատնացույց անելով ճանապարհից քիչ այն կողմ, այգու ծառերի տակ դրված արկղները։

Սարյակի բների մասին լսելով, Սոսը նայեց բարդիների ճյուղերին. բայց Վանին ուրիշ կողմ էր ցույց տալիս։ Սոսը չկարողացավ զսպել ծիծաղը, երբ տեսավ, որ եղբայրը արկղները սարյակի բների հետ էր շփոթել։

— Դրանք սարյակի բներ չեն, փեթակներ են։

Վանիի հետաքրքրությունը շարժվեց։ Նա մինչև այդ օրը մեղվի փեթակ չէր տեսել։

— Ի՞նչ կլինի, Սո՛ս, գոնե մի անգամ մոտիկից տեսնեմ, լա՞վ,— խնդրեց Վանին։

Եղբայրը ցանկացավ հիշեցնել նրան, որ իրենք ուշանում են. պապիկն էլ գուցե բարկանա, բայց Վանին այնպես էր խնդրում, որ նա ճարահատյալ համաձայնեց։

— Դե լավ, որ շատ ես ուզում՝ գնանք։

Նրանք դուրս եկան ճանապարհից և այգու



— Վա՜յ, նակատս...

փշալարերի արանքից մի կերպ անցնելով մոտեցան խնամքով դասավորված կապույտ արկղներին։

Անթիվ մեղուներ աշխույժ բզզոցով ներս ու դուրս էին անում փոքր անցքերից։ Ներսում աշխատանքը եռում էր։ Վանին դեմքը մոտեցրեց փեթակներից մեկի անցքին, տես-

նելու, թե ինչ են անում մեղուները ներսում։

— Վանի՛, կխայթեն,— զգուշացրեց Սոսը։

Բայց խոսքը դեռ չավարտած փեթակից ուժեղ բզզոցով դուրս թռան մի քանի մեղու և հարձակվեցին տղաների վրա։ Սոսը թևատակի պարկն իսկույն բացեց և փռելով գետին, շտապ մեջը մտավ։ Վանին եղբորն հետևելու փոխարեն ծիծաղում էր նրա տարօրինակ արարքի վրա։ Բայց այդ ծիծաղը երկար չտևեց. մեղուները շրջապատեցին նրան։

— Վա՜յ, ճակատս, վա՜յ, վա՜յ,— ճչում էր Վանին և ձեռքերը թափահարելով օդում, վազվզում էր այս ու այն կողմ։

Սոսը պարկի միջից բղավեց։

— Վանի՛, պարկի մեջ մտի՛ր, շո՛ւտ։

Խեղճ Վանի։ Զայրացած մեղուները ժամանակ չէին տալիս նրան, իսկ պարկը ընկել էր թևի տակից։

Վերջապես մեղուների բզզոցը կտրվեց։ Երբ Սոսը պարկի միջից դուրս եկավ, տեսավ, որ Վանիի դեմքը փոքր ինչ ուռել էր։

— Լաց մի՛ լինի, Վանի՛ ջան. մի քիչ կցավի՝ կանցնի,— մխիթարում էր նա եղբորը։

Սոսի սիրտը մի անսովոր տագնապ էր ընկել։ Ի՞նչ պատասխանել տնեցիներին։ «Դե ասենք, ես իսկի էլ մեղավոր չեմ, քանի անգամ զգուշացրի», արդարանում էր Սոսը մտքում։

Քիչ հետո նրանք գլուխները կախ վերադառնում էին նույն ճանապարհով։ Վանին էլ չէր լալիս։ Միայն հեծկլտում էր և թևով սրբում այտերի վրայի արտասուքը։ Նրանք տուն հասան։ Երբ տատը թոռանը տեսավ այդ վիճակում, մոռանալով պարկերի ու դարմանի մասին, ձեռքերը ծնկներին խփեց։

— Վա՛յ քոռանամ ես, էդ ի՞նչ ես դառել...

Վանին տատի այդ բացագանչության վրա ձայնը նորից բարձրացրեց։

— Մեղուներն են արել, տատի՛, մեղուները,— վրա տվեց Սոսը։

— Այ տղա՛, բա դու որտեղ էիր, որ երեխային այսպես բրքրել են անիրավները։

Եվ Սոսը արագ-արագ պատմեց ամբողջ եղելությունը։ Մի ժամ հետո Սոսը դեպքի վայրից տուն վերադարձավ եղբոր կորած գլխարկն ու պարկը հետը բերելով։ Նա չկարողացավ ծիծաղը զսպել, երբ տեսավ Վանիին, որը ամբողջովին մածունոտված երեսով նստել էր գոմի տանիքին ու հեծկլտալով ինչ-որ բան էր ուտում։ Մածունը տատն էր քսել, որ ուռած տեղերի ցավը մեղմանա։

⁂

Մի քանի օր հետո, երբ Վանիի դեմքի ուռուցքները ամբողջովին իջան, պապը խոստացավ նրան կոլտնտեսության մեղվանոցը տանել։ Վանին, իհարկե, շատ էր ցանկանում տեսնել, թե ինչպես են մեղուները փեթակներում մեղր պատրաստում, բայց հիշելով անցած դեպքը, վախեցած կրկնում էր։

— Ոչ, ոչ, պապի՛, նրանք ինձ նորից կկծեն...

— Չէ, բալի՛կս, ես որ քեզ հետ եմ, նրանք մազիդ անգամ չեն դիպչի։

Պապի այս խոսքերից քաջալերված Վանին մտածում էր «երևի մեղուները ճանաչում են նրան...»

Մփ օր էլ պապը առավոտ շուտ արթնացրեց նրան և ասաց.

— Դե՛, պատրաստվի՛ր, գնում ենք...

Քիչ հետո Վանին պապի ձեռքից բռնած բակից դուրս եկավ։

— Պապի՛, մեղուները քեզ ճանաչո՞ւմ են, հարցրեց նա ճանապարհին։

— Չէ, Վանի՛ ջան, մեղուները հո խելք չունեն, որ ճանաչեն։ Հենց քթներին դիպար՝ իրենց արածը կանեն. բայց, դե՛, մարդը խելք ունի. մեղուն ինչ է, որ նրանից էլ չկարողանա պաշտպանվել։

Կոլտնտեսության մեղվանոցն այնքան էլ հեռու չէր։

Վանին շատ զարմացավ, երբ այգու փոքր տնակից պապը ինչ-որ դույլանման ցանցեր բերեց, որոնք պատրաստված էին նուրբ և բարակ երկաթալարից։

— Ա՛յ, սա որ հագնես, մեղուներն էլ չեն կարող ոչինչ անել...

Եվ իսկապես, երբ Վանին ցանցը գլխին անցկացրեց, իսկույն հիշեց, թե ինչու այն օրը Սոսը պարկի մեջ մտավ։



Վանին կանգնել էր բացված փեթակի մոտ…

Պապը մյուս ցանցը գլուխն անցկացրեց և մոտեցավ արկղներից մեկին։ Կափարիչը բարձրացրեց։ Ինչպես ծխնելույզից դուրս կժայթքեր ծուխը, այնպես էլ մեղուների խումբը, ականջ ծակող բզզոցով, դուրս թափվեց փեթակից։ Վանին կանգնել էր բացված փեթակի մոտ և ակնապիշ հայացքով նայում էր, թե ինչպես էր պապը այնտեղից հանում խնամքով դասավորված շրջանակները։ Բարակ մոմաշերտի վրա բազմաթիվ խոռոչներ էին երևում, հենց այդ խոռոչներում էլ գտնվում էր մեղրը։

Պապը բոլոր շրջանակները հերթով դուրս հանեց։ Փեթակի շուրջը տասնյակ սատկած մեղուներ կային, որոնք իրենց մեծությամբ տարբերվում էին մյուսներից։

— Սրանք ինչո՞ւ չեն թռչում, պապի՛, քնե՞լ են,— հետաքրքրվեց Վանին։

Պապը ժպտաց և շտկելով կորացած մեջքը ասաց.

— Հա, որդի՛, քնել են, բայց այնպիսի քնով, որ էլ երբեք չեն զարթնի։

— Ինչպե՞ս… — զարմացավ Վանին։

Պապը բացատրեց նրան, թե ինչու են մեղուները սպանում իրենց ծույլ ու անբան ցեղակիցներին։

— Մեղուներ են, բայց նրանք էլ չեն սիրում ծույլերին, և որովհետև դրանք չեն աշխատում, մարդիկ նրանց բոռ են անվանում։

Եվ Վանին հիշեց, թե ինչպես մի անգամ մայրիկը Սոսին բոռ անվանեց։ Դա այն ժամանակ էր, երբ նա չէր սովորում դասերը և շարունակ բարկացնում էր մայրիկին։

— Ես միայն մի անգամ եմ ծուլացել, բայց էլ չեմ անի։ Ես բոռ չեմ, չէ՞ պապի։

Պապը ծիծաղեց և շոյեց Թոռնիկի գլուխը։

# ՈՒԼԻԿՆ ՈՒ ՊՈՒԼԻԿԸ





*ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ*

*Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ*

Տատիկն ուներ
Մի ուլիկ,
Ու գեղեցիկ
Մի պուլիկ.
Այդ պուլիկով
Թանկագին,
Կաթ էր տալիս
Ուլիկին:

Չէր նկատում
Տատիկը՝
Մեծանում էր
Ուլիկը:
Իսկ պուլիկն էլ
Դե, գիտենք,
Չի մեծանում
Նա երբեք...

Բայց մի օր էլ
Ուլն ագահ,
Էլ չսպասեց՝
Տատը գա:
Գլուխն իսկույն
Ներս հրեց,
Ու պուլիկից
Կաթ խմեց:

Հենց որ խմեց
Կաթն անուշ,
Գլուխն ուզեց
Հանի դուրս.
Քաշեց, փաշեց
Քաշքշեց,
Բայց պուլիկից
Չազատվեց:

Թողած գործը,
Ամեն բան,
Տատիկն հասավ
Օգնության.
Մեկ փաշում էր
Ուլիկից,
Մեկ փաշում էր
Պուլիկից:

Ջա՛ն, վերջապես
Դուրս եկավ.
Բայց տատիկը
Վայր ընկավ...

Զայրացել էր
Տատիկը,
Մըկըկում էր
Ուլիկը.
Մըկըկում էր
Ուլիկը,
Կոտրվել էր
Պուլիկը...



# ՏԱՅԳԱՅԻ ՕՐԵՆՔԸ

Վ. ԱՐԱՄՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Մեր նարտը կանգնեց Տատոյի յուրտի առաջ։ Երբ ներս մտանք, Տատոն ձեռքի շարժումով հրամայեց լռել։ Նա մռայլ էր և հուզված։ Ջութակի քնքուշ ու թախծոտ հնչյունները մեղմ ելևէջներով հանգչում էին յուրտում։ Տատոն ծխում էր ու լսում։ Նրա բևեռային գիշերների նման սև աչքերը թաց էին։ Մենք առաջին անգամ էինք տեսնում Տատոյին այդպիսի վիճակում։ Երբ ջութակի նվագը վերջացավ ու ռադիոընդունիչը լռեց, Տատոն մոտեցավ մեզ։

— Նստեցեք,— ասաց Տատոն ու խորը հոգոց քաշեց։— Դուք զարմացած եք, իսկ ես ավելի քան... Այս երաժշտությունը ես լսել եմ դեռ մանուկ հասակում. այն ժամանակ արտասվեցի, հիմա էլ եմ արտասվում։

Նա մի պահ լռեց, կարծես թե հիշողության մեջ ինչ-որ բան վերականգնելու համար։ Երբ նորից վառեց ծխամորճը, սկսեց պատմել։

— Ուշ աշուն էր, տրտմագին ու թախծոտ աշուն։ Ամբողջ օրը տայգայում էի։ Երբ վերադարձա յուրտը, տեսա մի անծանոթ մարդու՝ ընկած հորս ոտքերի տակ։ Հայրս շատ բարկացած էր։ Օտարականը քառասունին մոտ, կապույտ աչքերով նիհարակազմ մի մարդ էր։ Նա շեկ մազեր ուներ ու նեղլիկ դեմք։

— Ես խախտել եմ տայգայի օրենքը,— շշնջաց օտարականը։

— Եվ պետք է պատժվես տայգայի օրենքով,— նրա խոսքը լրացրեց հայրս ու ծխամորճը ետ տանելով շրթունքներից, դանդաղությամբ բարձրացավ տեղից, ծանր ու սպառնալից իր հայացքը մի պահ անգամ չհեռացնելով գունատ դեմքից։ Երբ նա արդեն ոտքի էր կանգնել, ձեռքի կտրուկ շարժումով ցույց տվեց կրակարանի առջև ընկած կացինը։ Օտարականը կտավի նման գունատվեց։ Նրա ճակատին երևացին սառը քրտինքի առաջին կաթիլները։ Նա մի պահ վարանեց, ապա վերկացավ տեղից, հանեց գդակը, վերցրեց կացինը և ծանր քայլերով դուրս ելավ յուրտից։



Հայրս շատ բարկացած էր։

Նա ծանր հանցանք էր գործել, խախտել էր տայգայի ամենախիստ օրենքը, որը ծայր հյուսիսում ապրող բնակիչներից և ոչ մեկը խախտել չէր կարող։ Դրանից մի քանի օր առաջ, նա թողել էր Օլա գետի հովիտը և եկել էր տայգայի խորքը արջեր ու եղջերուներ որսալու հույսով։ Գալուց մի քանի օր հետո, եղջերուի կիրճում, գերանաշեն որսորդական մի տնակում նա վառել էր առաջին խարույկը և սկսել էր հետամուտ լինել որսին։ Այդ ժամանակ էլ ավերել էր որսորդական փչակները, որի համար հայրն անգամ չի ների իր միակ որդուն...

Դարեր շարունակ այս մռայլ տայգայում սովորություն է եղել, որ շավիղների եզրերին կանգնած հաստաբուն ծառերի փչակներում մշտապես պահվել ու լրացվել են լուցկու և

ծխախոտի պաշարները: Փոկի կաշվից կարած հատուկ տոպրակների մեջ դրել են մի տուփ լուցկի, երկու տուփ ծխախոտ և որոշ քանակությամբ աղ, ապա տոպրակը տեղավորել հաստաբուն ծառերի փչակներում: Իսկ ծառի վրա, փչակի մոտ, կացնով խորը կտրվածքներ են արել, որպեսզի ցրտից սառչող որսորդը կամ անցորդը կարողանա իմանալ նրանց տեղը և այդ լուցկիների օգնությամբ խարույկ վառի, իր տեղը հայտնի կամ սառած մարմինը տաքացնի: Եվ ամեն մարդ խնամքով պետք է վարվեր այդ պաշարների հետ: Եթե որսորդի պաշարը շատ է, նա պարտավոր էր իր ավելցուկը նույնպես թողնել որսորդական փչակներում: Եվ իսկապես, հիմա էլ տեսել եմ փչակներ, որտեղ լուցկիների քանակը հասել է մինչև հիսուն տուփի: Երբեմն նաև սպիրտ ու փամփուշտներ են լինում: Այդ բոլորն արված է մարդուն օգնելու նպատակով: Այդ սքանչելի սովորությունը հիմա էլ է պահպանվում...

Հայրս անցնելիս է եղել այն շավիղով, որով նրա առջևից քայլել է օտարականը՝ փոկի կաշվից կարած տոպրակներն ուսին: Նա ավերել ու թալանել էր որսորդական փչակները: Բայց հեռու չէր գնացել: Հայրս հետապնդել ու անդունդի վրա կախված ծերպերի խռովուղում կանգնեցրել էր նրան...

Երբ օտարականը դուրս գնաց, հորս դեմքը բոլորովին մռայլվեց: Նա վերցրեց հրացանն ու հետևեց նրան: Ես հասկացա հորս միտքը և դուրս եկա: Նա ուզում էր իրագործել տայգայի այդ չգրված օրենքի չգրված դատավճիռը: Գազանների նեղ կածաններից մեկն իջնում էր մամռապատ բլրակից, հապալասի թփուտների ու դարավոր կեչիների անտառի միջով ու կորչում կիրճերի ոլորտում: Այդ կածանով գլուխը կախ իջնում էր օտարականը՝ կացինը ուսին: Եվ երբ նա աչքից հեռացավ, կածանի վրա երևաց հորս սև ուրվագիծը: Նա գիշատիչ գազանի զգուշությամբ քայլ առ քայլ հետևում էր «դատապարտված» մարդուն: Վերջինս չէր էլ կասկածում, որ նրան հետապնդում են: Այնտեղ, որտեղ կածանը խճճված ժապավենի նման պտույտ էր գործում մացառուտների մեջ ու անհետանում տայգայի անանցանելի ճահիճներում, հայրս արագացնում էր իր քայլերը: Առաջին իսկ հայացքից հորս դուր էր եկել այդ մարդն իր պարզությամբ ու պատիժը կրելու պատրաստակամությամբ: Նա ցավում էր, որ այդ մարդը չէր իմացել և կոպիտ կերպով խախտել էր տայգայի օրենքը:

Հայրս քայլում էր ու մտածում, որ մեծ հաճույքով կվերցներ նրա ձեռքից կացինը, որով անծանոթը պարտավոր էր ինքը կտրել իր ձախ ձեռքի դաստակը. այդ էր պահանջում տայգայի հին օրենքը:

Սկզբում օտարականը գնում էր դանդաղ ու անհանգիստ քայլերով: Մացառուտ ու մթին խանդակի մոտ, նա հանկարծ դուրս եկավ արահետից, նետվեց ցախկեռասի խիտ թփուտների մեջ ու անհետացավ: Հայրս անմիջապես չնկատեց. իսկ երբ իմացավ, արդեն ուշ էր: Նա ցնցվեց բարկությունից, արագացրեց քայլերը և գազանի նման խուժեց ցախկեռասի խիտ թփուտների մեջ:

Տայգայի գիշերվա անթափանց խավարի նման այդ խռովուղիներով ոչինչ գտնել հնարավոր չէր: Օտարականին գտնելու հույսով հայրս երկար թափառեց կածանից կածան, բայց իզուր: Երբ անօգուտ համարելով իր ջանքերը նա պատրաստվում էր վերադառնալ, ականջին հասան ինչ-որ անսովոր հնչյուններ: Կանգ առավ: Ես կուչ եկա թփի տակ, որպեսզի հայրս չնկատի ինձ: Հնչյունները գրավեցին մեր ուշադրությունը: Հայրս իր ծանր ոտքերը հաստաշերտ մամուռի մեջ թաղելով, առաջ շարժվեց: Քանի նա մոտենում էր կախարդական հնչյուններին, այնքան ավելի զգույշ ու ուշադիր էր դառնում: Լեռներից վազող մի վտակի մոտ նա նորից կանգ առավ: Հնչյունների քաղցրալուր ելևէջները թախիծ ու վիշտ տարածեցին մռայլ տայգայում: Քանի գնում՝ հայրս ավելի հափշտակվում էր: Ինչ-որ անըմբռնելի զգացում, հաճելի թախիծ պատեց նրան: Նա մոռացավ օտարականին, մոռացավ ինքն իրեն: Հմայված երեխայի պես կլանում էր քնքուշ մեղեդին և հուզվում: Մարտական ելևէջների թափից նա մերթ ծիծաղում էր, մերթ լալիս էր ջութակի հետ մեկտեղ: Եր-

բեմն էլ քնքուշ գործիքը մռնչում էր վիրավոր գազանի նման...

Արդեն երեկո էր, մեղմ քամին շարժում էր ծառերի գունաթափ կատարները։ Շրջակա բլուրներն ու մթին խանդակները լուռ էին։ Չէր լսվում թռչունների ծլվլոցը, թփերն անշարժ էին։ Ամբողջ տայգան ասես քարացած լսում էր ջութակի նվագը։ Տրտմագին ելևէջները թափանցում էին տայգայի խորքն ու մեռնում հեռավոր կիրճերում։ Ձեռքի դաստակը կտրելուց առաջ, ջութակահարը վերջին անգամ հրաժեշտ էր տալիս ջութակին։ Նրա վարժ ու ճկուն մատները երբեք այդպիսի անզուսպ արագությամբ չէին ոստոստել լարերի վրա, ինչպես հրաժեշտի այդ ծանր ժամին։ Հայրս կախարդվածի նման մոտեցավ ու կանգնեց խրճիթի դռանը։ Հետո ինքն էլ չիմացավ, թե ինչպես միանգամից ներս ընկավ խրճիթ։ Օտարականը ճանաչեց հորս։ Ջութակը լռեց։ Նվագողը շանթահարի նման նետվեց մի կողմ, հենվեց խրճիթի պատին ու տեղում քարացավ։ Հորս դեմքը մռայլվեց ու սևացավ։ Նրանք երկար ժամանակ անթարթ աչքերով նայում էին իրար։ Դատապարտյալն ու դատապարտողը կանգնել էին իրար դիմաց։ Հորս սև աչքերում առկայծեց ինչ-որ տարօրինակ փայլ և նա իրեն հատուկ դանդաղկոտությամբ բարձրացրեց հրացանի փողը։ Օտարականը գունաթափվեց, շուրթերին սեղմեց ջութակն ու ամուր-ամուր համբուրեց։ Նրա շրթունքների հպումից լարերը թույլ կերպով արձագանքեցին։ Օտարականը սարսափահար նայում էր հորս աչքերին։

«Վերջ» առկայծեց օտարականի մտքում։ Նա աչքերը փակեց։ Հայրս խորը հառաչ արձակեց ու շշնջաց.

— Առ, վերցրու այս խաղալիքը։

Նա հրացանը մեկնեց ջութակահարին։ Ջութակահարի գունատ դեմքը պատեց սառն քրտինքի կաթիլներով։ Նա ուշքի չէր գալիս։ Երբ նա սթափվեց, նրա սառած աչքերի մեջ նշմարվեց առաջին կենսական փայլը։

— Վերցրու,— բարձր ձայնով ասաց հայրս, դեմ շպրտեց հրացանը և իր հզոր ձեռքերի մեջ առավ ջութակահարի դողդոջուն մատները։ Նա երկար ժամանակ նայում էր այդ տարօրինակ ձեռքերին, նայում էր գետնին ընկած կացնին, ջութակին ու ծանր մըղձավանջից արթնացած մարդու դեմքին, նա-



Օտարականը սարսափահար նայում էր...

յում էր խիստ, բայց քնքուշ ու կաթոգին հայացքով։

— Ներում եմ, բարեկամ— շշնջաց նա և հուզմունքը թաքցնելու համար դեմքը շուռ տվեց օտարականից։ Բայց ես տեսա հորս արցունքները։

Տատոն լռեց. դրսում սուլում էր տայգայի ցրտաշունչ քամին։

# ԳՈՐԾԱՐԱՆՈՒՄ

Մ. ՄԵՀՐԱԲՅԱՆ

Ֆոտո՝ Ա. ՀԵՔԵՔՅԱՆԻ

*Քեզ համար մայրիկը ամեն տարի մուրաբա է պատրաստում: Դժվար գործ է մուրաբա պատրաստելը. մեկ եփն է անցնում, մեկ կորիզներն են մրգից դուրս թափվում, մեկ էլ տեսար՝ թթվեց: Ուրեմն պետք է նորոգել եփածը:*

*Դա հնարավոր է միայն այն ժամանակ, երբ մուրաբան պատրաստվում է միայն ընտանիքի համար. իսկ եթե մուրաբա են պատրաստում մի ամբողջ քաղաքի կամ շատ քաղաքների համար, էլ չես փոխի, չես նորոգի: Եվ վատ համբավդ կգնա քաղաքից քաղաք, գյուղից՝ գյուղ, մարդիկ կդժգոհեն քո վատ աշխատանքից:*

*Երևանում, Հոկտեմբերյանում պատրաստած մուրաբան, կոմպոտը, մրգահյութը և մնացած բոլոր պահածոները օգտագործում եք և՛ դու, և՛ վրացի Վանոն, և՛ ուզբեկ Ալին, և՛ ուկրաինացի Օստապը, և՛ լեհուհի Վանդան, և՛ էսկիմոս Լոկ-Տոն: Ուրեմն պետք է այնպես պատրաստել, որ դիմանա թե՛ շոգին, և թե ցրտին. որ գնա շոգենավով, գնացքով, սավառնակով, շնասահնակով: Իսկ այդպես պատրաստել կարելի է միայն գործարանում:*

*Դու, փոքրիկ բարեկամ, ընկերացիր ինձ՝ միասին գնանք գործարան:*

*Ահա մենք կանգնած ենք Հոկտեմբերյանի պահածոների գործարանի առաջ:*

*Ծառուղին ուղիղ գործարան է տանում: Ճամփեզրերին, ծառերի տակ, դրված են նստարաններ:*

*Ահա և գործարանի գլխավոր ինժեներ ընկեր Մուրոյանը: Նա գործարանն այնպես գիտի, ինչպես դու՝ հինգ անգամ հնգի պատասխանը: Նրա ուղեկցությամբ մենք մտնում ենք գործարան:*

*Մեր կողքով անցնում են բեռնակիր ավտոմեքենաներ: Նրանք առավոտից մինչև երեկո սովխոզներից և գործարանի այգիներից բերում են հասուն մրգերն ու դատարկում հումքի բաժնում, իսկ այնտեղից գործարանի ձեռքերը տանում են ներս:*

*— Մի՞թե գործարանը ձեռքեր ունի,— կհարցնես դու:*

*— Ունի. լսո՞ւմ ես աղմուկը: Այդ նրանք են: Ահա կանգ առան: Կոնվեյերն է, կոնվեյերը...*

*Կոնվեյերը վերցնում է միրգն ու տանում արտադրական ցեխը:*

*Այսպիսի մեքենաներ կան բոլոր գործարաններում: Նրանք արագացնում և հեշտացնում են մարդու աշխատանքը:*

*Գործարանի ցեխերը ողողված են արևի ճառագայթներով: Մաքուր օդում կանգնած է թարմ ու եփվող մրգերի բույրը: Մարդիկ հագել են սպիտակ խալաթներ, գլուխներին սպիտակ գլխաշորեր են կապել կամ թասակներ դրել, ինչպես սանատորիայի բժիշկները: Հումքի բաժնից միրգը գնում է քիմիական մաքրման ենթարկվելու:*

*Այս կաթսաները լողարաններ են, որտեղից միրգը դուրս է գալիս, կորցնելով իր գույնն ու մաշկը:*

*— Ինչպե՞ս,— կհարցնես դու:*



Կոմպոտի ցեխում:

*Ահա թե ինչպես։ Ջրին ավելացվում է 3—8 տոկոս կաուստիկ սոդայի լուծույթ։ 3—5 րոպե մնալով այս խառնուրդի մեջ, դեղձը կորցնում է իր մաշկը։ Եթե ժամանակն անցնի, դեղձը կքայքայվի և այլևս պիտանի չի լինի ո՛չ կոմպոտի, և ոչ էլ մուրաբայի համար։ Դրա համար բանվորներն ուշադրությամբ հետևում են ժամացույցի սլաքին։ Երիտասարդ բանվորուհին, որի անունը Մարգարիտ է, իսկ ազգանունը Կարապետյան, գործարան եկավ սևագործ բանվորուհի և կարճ ժամանակում վարպետ դարձավ։ Հիմա ընկեր Մարգարիտը համեղ մուրաբաներ ու կոմպոտներ է պատրաստում։*

*Նորից աղմուկ։ Կոնվեյերն է գալիս։ Զարմանալի մեքենա է դա, լինում է բոլոր ցեխերում, ոչ ոքի գործին չի խառնվում. նրա գործը միայն տանել-բերելն է։*

*Վերջապես լվացված, մաքուր միրգը դրվում է դարսման սեղաններին։ Տես ի՜նչ կույտեր են, ողորկ, սպիտակ։ Մինչև անոթներում դասավորելը, միրգը մնում է հոսող ջրի տակ, օդի ազդեցությունից չսևանալու, գույնը չփոխելու համար։*

*— Զը՛նգ, զը՛նգ, զը՛նգ...*

*— Այս ի՞նչ զնգոցներ են...*

*Կարծես մի քանի հարյուր երեխա գդալներով խփեցին բաժակներին։*

*Վերևից իջնում էր երկհարկանի կոնվեյերը։*

*Սունկերի պես մետաղյա ձողերին հագած, մեկը մյուսի հետևից գալիս են մաքուր լվացված անոթներն ու շարվում բանվորների առաջ՝ կոնվեյերի վրա։ Այստեղ արդեն հապաղել չի կարելի։ Արագ լցնում են միրգը, շաքարահյութ ավելացնում և տեղավորում կոնվեյերի երկրորդ հարկում։*

*Մենք կոնվեյերի հետևից գնում ենք գործարանի փակման-ամրացման ցեխը։*

*Այստեղ կողք-կողքի կանգնած փակիչ մեքենաները աքցանե ձեռքերով բռնում են անոթներին հագցված կափարիչը և սեղմում կոկորդը։ Այդպիսի մեքենաներով միանգամից կարելի է 12 կափարիչ ամրացնել։ Հետո բանվորները ստուգում են կափարիչները, եթե թույլ են, նոր կափարիչ են անցկացնում։*



Պահածոները իջեցնում են եփման։

*Կարծես թե ամեն ինչ վերջացավ։ Ե՛վ միրգըն է լցված, և՛ շաքարահյութ, և՛ կափարիչներն են ամրացված։ Սակայն մնում է ամենակարևորը՝ եփելը, իսկ եփելը հեշտ գործ չէ։*

*Եփման ցեխի մեծ ու ընդարձակ սրահում իրար կողքի շարված են եփող մեքենաները։ Կոնվեյերը գործարանի տարբեր ցեխերից այստեղ է բերում տարբեր չափերի ու ձևերի անոթներ՝ ամրացված կափարիչներով։ Նրանցից մի մասի մեջ կապտին են տալիս խոշոր և հյութալի սալորները, մյուսներում՝ դեղձն է, ապա ջեմն ու մրգահյութը։*

*Բացի մուրաբաներից, բոլորն այստեղ եփվում են առաջին անգամ և տարբեր ժամանակամիջոցում։ Առաջին անգամ մուրաբան եփվում է մուրաբայի ցեխում։ Քիմիական մշակումից հետո, նա այնտեղ եփվում է շաքարահյութի մեջ։ Որպեսզի մուրաբան գեղեցիկ գույն և հաճելի բույր ունենա, ավելացվում են կիտրոնի հյութ, մեխակ և ու-*

*րիշ համեմունքներ։ Կիսաեփ մուրաբան գնում է սառեցման ցեխը, որ մեկ օր մնա շաքարահյութը մրգի մեջ ներծծվելու համար։*

*Հաջորդ օրը բանվորուհիների վարժ ձեռքերը տեսակավորում են մուրաբան, ավելացնում լրացուցիչ քանակությամբ շաքարահյութ և ուղարկում փակման ցեխը։ Այստեղից մուրաբան գնում է եփման ցեխը, վերջնականապես եփվելու համար։ Եփման ցեխում մենք ծանոթանում ենք հմուտ վարպետ Վարդանյանի հետ։ Երկար տարիներ նա աշխատում է այդ գործարանում և շատ երիտասարդների է սովորեցրել իր արհեստը։*

*Նրա մոտ կանգնած է կոմերիտուհի Ժենյա Սարգսյանը։ Նա էլ վարպետ է։ Տես, թե ինչպես է դասավորում անոթները կաթսայի մեջ, կողք-կողքի, մեկը մյուսի վրա և փակում կաթսայի կափարիչը։ Սլաքը ցույց է տալիս մեկ և կես։ Այդ նշանակում է, որ եռացումը կատարվում է մեկ և կես մթնոլորտի ճնշման տակ։*

*— Ինչո՞ւ ճնշման,— կհարցնես դու։*

*— Որպեսզի հարյուր աստիճան եռման ժամանակ անոթի կափարիչները դուրս չթռչեն։*

*Նորից աղմուկ։ Եկավ կոնվեյերը և տարավ տար-տար անոթները. գնանք նրա հետևից։ Ահա արևոտ, ընդարձակ սրահ, երկար սեղաններ...*

*Սեղանների առաջ կանգնած բանվորները ուշադրությամբ զննում են անոթները, շոշափում, ստուգում կափարիչները, գտնում խոտանն ու ետ ուղարկում վերամշակելու համար։ Այստեղ սեղանների վրա դասավորված են տարբեր տեսակի պիտակներ, որ հաճախ տեսնում ես անոթների և շշերի վրա։*

*Ահա խաղողի դեղին ողկույզը՝ տերևն ուսին։ Սրանք էլ սալորներ են, կապույտ, հյութալի, իսկ այս դեղձերը զույգ-զույգ կծկվել են տերև-գլխարկի տակ։ Սա նոր բացված վարդ է, կանաչ պատյանի միջից երևացող կարմիր կոկոնով։ Այստեղ փակցնում են համապատասխան պիտակները և ուղարկում պահեստ։*

*Կողք-կողքի շարված, դարակների վրայից ժպտում են տարբեր տեսակի մուրաբաները, կոմպոտները, մրգահյութերն ու ջեմը։*

*Ավտոմեքենաներն այստեղից արկղերը տանում են կայարան, իսկ այնտեղից Հոկտեմբերյանի պահածոների գործարանի արտադրանքը տարբեր ուղղություններով գնում է դեպի խոշոր քաղաքները, հեռավոր գյուղերն ու բանվորական ավանները, որտեղ մարդիկ մեծ բավականությամբ ճաշակում են Արարատյան դաշտավայրի բարիքն ու գոհ ժպտում։*

## ՋՐԱՂԱՑԸ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Ջրաղաց ենք շինել
Ես ու մեր Մոսին,
Ցորեն բերեք, Նինե՛լ,
Աղանք միասին։

Պատրաստել ենք, ճարպել,
Առվակի ճամփան,
Ու Մոսին է արդեն
Դարձել ջրաղացպան։

Ջրաղացն է բանում,
Չխկում անօգուտ...
Կատակ հո չենք անում,
Ցորեն բերեք, շո՛ւտ։

Ցորեն բերեք, տղե՛րք...
Վա՜յ, այս ի՞նչ եղավ.
Քշեց առվակն այս խենթ,
Ամեն ինչ տարավ։

Քշեց տարավ, բայց մենք,
Եկ նորից, Վանի՛,
Այնպես ամուր շինենք,
Որ էլ չտանի։

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

## ՀԱՄԱՌ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ

Դ. ԳԱԼՃՅԱՆ

Երբ Հայկուշը դեռ փոքր աղջիկ էր, մայրը նրա մեջ շատ տարօրինակ գծեր նկատեց: Ընկերուհիները հափշտակված խաղում էին տիկնիկների, արջուկների հետ ու նրանց համար փոքրիկ գունավոր զգեստներ կարում, իսկ Հայկուշը շինարարության համար բերված ավազաթմբի վրա տնակներ էր կառուցում, զարդարում ցանկապատներով, ծառ տնկում: Տղաների հետ ընկերանալով նրանց նման մուրճ ու սղոց էր բանեցնում: Մայրը աշխատում էր նրան ետ պահել այդ «տղայական» հակումներից, բայց հայրը միջամտում էր:

— Աղջիկս ինժեներ պետք է դառնա,— ասում էր նա և խրախուսում Հայկուշին:

Անցան տարիներ:

Այս տարի Երևանի Պիոներների պալատում բացվեց պատանի տեխնիկների ցուցահանդես: Այնտեղ բոլորի ուշադրությունը գրավում էր խնամքով պատրաստված մի էլեկտրատրակտոր: Նա ուներ 22 սանտիմետր երկարություն և 15 սանտիմետր բարձրություն: Անիվները փայտից են, թրթուրները՝ լուցկիներից, կմախքը՝ ստվարաթղթից: Շարժումը մոտորից թրթուրներին հաղորդվում է փոկային փոխանցման միջոցով: Էլեկտրատրակտորի այդ մոդելը պատրաստել է Հայկուշ Սահակյանը:

Չորս տարի առաջ Հայկուշն սկսեց պարապել ռեսպուբլիկայի պատանի տեխնիկների կայանի էլեկտրատեխնիկական խմբակում: Տեսնելով աղջկա ընդունակություններն ու շնորհքը խմբակի ղեկավարը հանձնարարեց ավելի բարդ մոդելներ պատրաստել:

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

Մի անգամ էլեկտրատեխնիկական խմբակի անդամները էքսկուրսիա գնացին Շահումյանի շրջանի մեքենատրակտորային կայանը: Այնտեղ նրանց ուշադրությունը գրավեց էլեկտրատրակտորը, որի մասին նրանք դրույց լսեցին, ծանոթացան կառուցվածքի և նրա առավելությունների հետ: Հենց այդ ժամանակ էլ խմբակի անդամները որոշեցին էլեկտրատրակտորի մոդել կառուցել: Ամենից շատ այդ հարցը հուզում էր Հայկուշ Սահակյանին: Եվ ահա մի օր նա դիմեց խմբակի ղեկավարին.

— Ընկե՛ր Հայրապետյան, օգնեցեք մեզ. ուզում ենք էլեկտրատրակտոր կառուցել:



Հ. Սահակյանը և Լ. Դարբինյանը մոդել են պատրաստում:

Հայրապետյանը նրանց մանրամասն բացատրեց այդ մոդելի մասերի, կառուցվածքի մասին, ցույց տվեց, թե ինչպես պետք է պատրաստել:

Խմբակի աշխատանքներում արտակարգ աշխուժություն առաջացավ: Իսահակյանի

անվան դպրոցի աշակերտուհիներ՝ Հայկուշ Սահակյանը և Լենա Դարբինյանը մեծ եռանդով գործի անցան։ Առաջին հերթին նրանք պատրաստեցին շրջանակը, որի ներքևում ամրացրին փայտից շինած երկու առանցք։ Առաջին առանցքը շրջանակին ամրացրին մեխերով, իսկ հետևինը պտտելով ամրացրեցին մետաղալարի առանցքակալին։ Առանցքին հագցրին թմբուկի նման հաստ անիվներ, որոնք չեն շարժվում։ Առանցքի վրա ճախարակ կա, որը կապված է միջագլանի հետ և փոկի հաղորդիչի միջոցով պտույտ է ստանում էլեկտրամոտորից։ Միջագլանը գրչակոթի նման մի կլոր փայտ է, որն ունի մի մեծ և մի փոքր ճախարակ։ Հետո նրանք շարժանիվների վրա ժապավենով անցկացրին տրակտորի թրթուրները, որոնք պատրաստված էին լուցկիներից։ Մոտորի պատրաստումն ավելի դժվար էր։ Նրա փոքրիկ մասերը պատրաստելու և իրար միացնելու համար անհրաժեշտ էր նուրբ ու մանրակրկիտ աշխատանք։ Թեև նախօրոք նրանք ձեռք էին բերել անհրաժեշտ գործիքներ, փոխանցման տուփ, ատամնավոր անիվներ. բայց նրանց չհաջողվեց միանգամից պատրաստել էլեկտրատրակտորի մոտորը։ Մի քանի անգամ նրանք հավաքեցին, միացրին էլեկտրական հոսանքը, բայց դրական արդյունքի չհասան. երկու-երեք պտույտից հետո մոտորը կանգ էր առնում։ Հայկուշն ու Լենան չհուսահատվեցին։ Նրանք համառ կերպով շարունակեցին աշխատանքը։ Ամեն հերթական փորձարկումից հետո նորից ու նորից ստուգում էին մոտորը։ Եվ ամեն անգամ նկատում էին, որ սխալներ կան։

Երկարատև ու համառ փորձերից հետո հաջողվեց գործի դցել մոտորը։ Երբ վերջապես տրակտորը հավաքված, պատրաստ էր, աղջիկները վերջին անգամ փորձարկեցին։ Հոսանքը միացնելուց հետո տրակտորն սկըսեց աշխատել։

Նրանց ուրախությանը չափ չկար։ Նրանք հասել էին իրենց նպատակին։

## ԴՊՐՈՑԻ ՉԵՄՊԻՈՆԸ

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

Դիրեկտորի առանձնասենյակում Բենիկը իրեն ճնշված էր զգում։ Նա խոնարհել էր գլուխը և լսում էր խոսակցությունը, բայց միտքը ուրիշ տեղ էր։ «Ամբողջ երկու օր չարչարվեցի, պատրաստեցի երկաթե կեռով հարմար մի փայտ, բայց չկարողացա օգտագործել»։ Իսկ դիրեկտորը ուշադիր լսում էր Բենիկի կողքին կանգնած միլիցիոներին։

— Ես վերջին անգամ եմ զգուշացնում այս տղային։ Արդեն երեք օր է, որ կրկնվում է այդ դեպքը։



Բենիկը մոռացավ ամեն ինչ, և ամբողջովին լսողություն դարձած, գլուխը վեր բարձրացրեց։

— Իսկ դու սիրո՞ւմ ես սպորտը. ա՛յ թեկուզ թեթև ատլետիկան, ֆուտբոլը,— հարցրեց դիրեկտորը։

— Այո, սիրում եմ։

— Դե ուրեմն լավ կլինի, ընկե՛ր լեյտենանտ,— միլիցիոներին դիմելով ասաց դիրեկտորը։— Նա այլևս ավտոների պոչից չի կպչի։

Դասերից հետո Բենիկին մոտեցավ դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղարը, տասներորդ դասարանցի Գևորգ Սարգսյանը։

— Բենի՛կ,— այսօր պետք է մասնակցես սեկցիայի պարապմունքին. դու արդեն գրըված ես։

Եվ այդ օրվանից Բենիկն սկսեց մասնակցել թեթև ատլետիկայի սեկցիայի պարապ-

մունքներին, նա իրեն սկզբում այնքան էլ լավ չէր զգում, ընկերներից ետ էր մնում։

«Ջուցե ինձանից ոչինչ էլ դուրս չգա՞»,— նման դեպքերում մտածում էր նա։ Բայց ֆիզկուլտուրայի դասատուն պատմում էր նրան սովետական սպորտսմենների փայլուն հաղթանակների, նրանց կամքի ու համառության մասին և վերջում ավելացնում.

— Եթե ուզես, դու էլ կարող ես այդպիսին դառնալ։

Բենիկը շարունակում էր հաճախել մարզումներին։ Նա սկսեց ավելի համառել, մի վարժությունը կրկնում էր մի քանի անգամ։ Մյուսների հետ միասին նա պարապում էր նաև մարմնամարզությամբ։ Առավոտյան լիցքային վարժություն էր կատարում։ Նրան այլևս հայրը չէր արթնացնում և հիշեցնում, որ ժամանակն է դպրոց գնալու։ Դասերն էլ այժմ ավելի հեշտ էր պատրաստում, ավելի առույգ ու աշխույժ էր զգում իրեն։

Անցան ամիսներ։ Մի օր էլ դպրոցի միջանցքում, պատի վրա Բենիկը կարդաց հետևյալ հայտարարությունը։

«Վաղը սպորտային օր է։ Դպրոցի թեթև ատլետները մրցելու են ֆիզկուլտուրայի կոլեկտիվի առաջնության համար»։

Աշակերտները խռնվել էին հայտարարության առաջ և հուզված վիճում էին։

— Արամը նորից չեմպիոն կդառնա,— ասում էր տղաներից մեկը։

— Ոչ, այս տարի Ռուբիկն ավելի ուժեղ է։

— Իսկ մեր դասարանի Բենիկին գիտե՞ք,— վիճաբանության մեջ մտավ մի գանգրահեր տղա։



— Բենի՞կ, ի՞նչ Բենիկ,— կիսածաղրական տոնով ասաց առաջին տղան,— այդպիսի սպորտսմենի անուն չենք էլ լսել։

— Բայց կլսեք։

Բենիկը կարմրեց և արագ քայլերով հեռացավ ընկերներից։

Հաջորդ օրը հարյուրավոր աշակերտներ հավաքվել էին ստադիոնում։ Վազում էին դպրոցի թեթև ատլետները։ Նրանց մեջ էր նաև Բենիկը։ Հետևում թողնելով մրցակիցներ Հուսիկին, Արամին, Սարգսին, նա առաջ նետվեց և անցավ ֆինիշը։

Ստադիոնում հավաքվածները երկար ծափահարեցին։ Եվ երբ դպրոցի դիրեկտորը շնորհավորեց նրան, Բենիկը շատ հուզվեց։ Այդ ժամանակ նրանց մոտեցավ մի միլիցիոներ։

— Ինչպե՞ս են գործերդ,— ձեռքը Բենիկի ուսին դնելով հարցրեց նա։

Բենիկը ճանաչեց միլիցիոներին։

— Ես այժմ մեր դպրոցի չեմպիոնն եմ,— կես ամաչելով, կես հպարտությամբ ասաց Բենիկը։

Երգիծական էջեր

# ՎԱՐՊԵՏ-ԱՄԵՆԱԳԵՏ

*ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ* *Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ*

— Բարև, էդի՛կ.
— Բարև, Պետի՛կ.
— Ա՛յ, թե դու էլ լավ ընկեր ես,
Այս ո՞րտեղ ես, չեմ տեսնում քեզ:
— Է՜, Պետիկ ջան, որ իմանաս,
Դու ուղղակի կզարմանաս.
Հենց որ դասերս պատրաստում,

Ոչ մի վայրկյան էլ չեմ նստում,
— Ի՞նչ ես անում:
— Չես իմանո՞ւմ.
Դուռ եմ շինում և նստարան,
Աթոռ, ավտո և պահարան,
Է՛լ հեծանիվ, է՛լ օդանավ...
— Բավական է, դե լավ, դե լավ,



Այդքան արհեստ միանգամի՞ց...
— Դու դեռ լավ չես ճանաչում ինձ,
Այդքանն ի՞նչ է,
Դեռ շատ քիչ է...
— Որպեսզի դուռ շինես մի նոր
Քանի՞ օր է քեզ հարկավոր.
— Թե սկսեմ ու թափ տամ ինձ,
Դուռն ի՞նչ է, որ՝ երկու ժամից,
Պահարանը՝... հա՛... երևի՝
Երեք ժամից պակաս տևի:
Ավտոն, ասենք՝ շատ, շատ, շատ, շատ՝
Տևի հինգ օր կամ մի շաբաթ:
Իսկ վառարան կամ լուսամուտ,
Մի վայրկյանում՝ շուտ–շուտ, շուտ–շուտ...
— Որ այդպես է, դե ինձ համար
Մի ծաղկաման շինիր հարմար:
— Աչքիս վրա, բայց... ի՞նչ անեմ,
Սղոց, տախտակ ու մեխ չունեմ:
— Այն ժամանակ՝ կոշիկ կարիր:
— Դե, բեր, ասեղ, կաշի ճարիր,
Մի աթոռ էլ՝ վրան նստեմ,
Ձևեմ, կարեմ ու պատրաստեմ:
— Լավ, մի՛ կարիր, չեմ ուզում, չէ,
Կոշիկ ունեմ, հարկավոր չէ,
Շինիր ավտո՝ մի մեքենա,
Որ ամենից արագ գնա...
— Այդ մեկն արդեն ինձ կներես,
Ավտո երբեք չեմ շինի ես.
Ավտոն շատ է վտանգավոր,
Փորձանք կգա գլխիդ մի օր...
Պետիկն այստեղ կուշտ ծիծաղեց,
Ընկերոջը խոսքով դաղեց.
— Ամո՛թ, ամո՛թ,
Ա՛յ պարծենկոտ,
Դու իսկապես լավ վարպետ ես,
Բայց... ափսոս որ բան չգիտես:

# ԵՐԿՈՒ ՁՈՒ

(Ֆելյետոն)

ԼԵՌ ԿԱՄՍԱՐ

Նկ. Կ. ԱՆՏՈՆՅԱՆԻ

*Մուկուշն իր խելքն այնքան չէր գործածել, որ ինքն էլ չգիտեր, թե ինչ գիտի, ինչ չգիտի։*

*Հայոց լեզվի գրավորների ժամանակ արտագրում էր իր աջակողմյան, հանրահաշիվը՝ ձախակողմյան ընկերներից և փառավոր թվանշաններ ստանում։ Ընկերներն ասում էին.*

*— Լավ, ա՛յ տղա, այստեղ դպրոց է, շրջապատիցդ արտագրում ես, իսկ որ կյանք դուրս գաս ի՞նչ պիտի անես։ Այդ խելքով դդումն ու վարունգը չես էլ ջոկի։*

*— Ծախողին կհարցնեմ,— պատասխանում էր Մուկուշը։*

*— Լավ, ասենք այդ էլ ծախողից իմացար, բա դու ապրելու համար որևէ գործ չպիտի անե՞ս. հաշվապահություն, փականագործություն։ Ապրելու համար հո ուրիշի վաստակը չե՞ս «արտագրի»։*

*— Փականագո՛րծ...*

*— Ա՛յ տղա, խելքի արի՛,— կրկնում էին ընկերները,— հո ամբողջ կյանքում արտագրելով չե՞ս ապրի։*

*Բայց Մուկուշն իր ընկերներին լսելու ա-*

կանչ չուներ։ Նա արտագրելով ապրել էր, արտագրելով էլ պիտի մեռներ, եթե այսպիսի մի դեպք չպատահեր։

Տարեվերջի քննություններ էին։ Աշակերտներն ավարտական շարադրություններն էին գրում։ Մուկուչն, իր սովորության համաձայն, աչքը ընկերոջ տետրակին, բառ առ բառ արտագրում էր նրանից։ Երբ բոլորը գրել վերջացրել էին ուսուցիչն ասաց.

— Եթե ձեր գրած շարադրությունները իրար նման լինեն, մեղավորին կպատժենք։

Մուկուչի ծնկները թուլացան, և նա իր շարադրությունը այդքան կարճ ժամկետում տարբերելու համար կարողացավ միայն ընկերոջ գրած «մի ձու» արտահայտությունը «երկու ձու» դարձնել իր տետրակում։ Ուրեմն կոլտնտեսության հավերը մեկի տետրակի մեջ օրական մեկ ձու էին ածում, մյուսի մեջ՝ երկու։

Տետրակներն արդեն հավաքել էին, երբ Մուկուչն զգաց, որ սխալ է կատարել։ Չէ՞ որ ոչ մի դեպքում հավն օրական երկու ձու չի ածում։

Ամբողջովին տագնապի մեջ, մինչև ուսուցչանոց, Մուկուչն ընկավ դասատուի հետևից թե՝ տետրակս ետ տվեք, այնտեղ հավերը սխալմամբ երկու ձու են ածել։ Բայց դասատուն փոխանակ վերադարձնելու, ասաց.

— Այդպես էլ պիտի լինի, մեկը ընկալ է, մյուսը՝ նոր ածածը։

Մուկուչն ինքնիրեն սիրտ տվեց.

— Երկու ձո՞ւ, բայց այնքան փոքր, որ մի ձվի չափ էլ չկա։ — Հետո էլ հառաչանքով ավելացրեց.

— Ի՞նչ լավ կլիներ, եթե ճանապարհին ձվերից մեկը կոտրվեր...

Մյուս օրը, շարադրությունները ստուգելիս, Մուկուչի տետրակին հասնելով դասատուն ծիծաղեց։ Նա այդ մասին պատմեց դիրեկտորին։ Վերջինս ասաց.

— Սպասեցեք, ես գիտեմ, թե ինչ կանեմ։

Եվ իրոք, տարեվերջի դպրոցական հանդեսին դիրեկտորը բացեց և բոլոր աշակերտների առաջ կարդաց նրա շարադրու-



թյունը։ Ամբողջ դահլիճը քրքջաց։ Բոլորը ոտքի էին կանգնում այդ զարմանալի «հավաբույծին» տեսնելու։ Իսկ «հավաբույծը» կարմրել էր։ Ամոթի քրտինքը առվակի պես հոսում էր նրա մարմնից։ Մի խոսքով՝ «քարաբաղնիս»։

***

Այդ օրվանից Մուկուչին տեսնողը «երկու ձու» գոռաց հետևից, ու նրա իսկական անունը մոռացվեց։

Դրանից հետո Մուկուչը փողոցում ընկերներին հանդիպելիս, գլուխը կախում էր։ Դա նշանակում էր, որ սրանից հետո իր գլխով պիտի մտածեր։ Նա բաց արեց երկար ժամանակ փակված ուղեղի դուռը և զարմանքով նկատեց, որ այնտեղ լավ մտքեր կային։ Նա չէր օգտվել նրանցից միայն ծուլության պատճառով։

# Ռ Ե Մ Բ Ր Ա Ն Դ Տ



*«Կարմիր հագած ծերունու դիմանկար»։*
*Գործ՝ ՌԵՄԲՐԱՆԴՏԻ*

Նկարից նայում է բազկաթոռի մեջ նստած, սպիտակ մորուքով և կնճռոտված դեմքով մի հոգնատանջ, բարի ծերունի: Նա հագած է կարմիր զգեստ, ձախ ուսին կրում է սև թիկնոց: Ձեռքերի վրա երևացող ուռած երակները պատմում են աշխատանքային երկար տարիների մասին:

Այս ստեղծագործությունը կոչվում է «Կարմիր հագած ծերունու դիմանկար» և գտնվում է աշխարհի լավագույն թանգարաններից մեկում՝ Լենինգրադի Էրմիտաժում: Դիմանկարի հեղինակն է 17-րդ դարի հոլանդական խոշորագույն նկարիչ Ռեմբրանդտը:

17-րդ դարում Հոլանդիան ապրում էր իր ծաղկումը: Հենց այդ ժամանակ էլ հանդես է գալիս Ռեմբրանդտը:

Ռեմբրանդտ Խարմենս վան Ռեյնը ծնվել է Հոլանդիայի Լեյդեն քաղաքում, ջրաղացպանի ընտանիքում: Ծնողները ոչինչ չեն խնայել իրենց որդուն լրիվ կրթություն տալու համար: Եվ նա դպրոցից անցնում է համալսարան: Սակայն նրան հանգիստ չի տալիս նկարիչ դառնալու երազանքը: Նա մասնավոր դասեր է ստանում զանազան նկարիչների արվեստանոցներում:

1625 թվականին, 19 տարեկան Ռեմբրանդտը ստեղծագործական ինքնուրույն ճանապարհ է ընտրում և հիմնում նկարչական դպրոց:

Վեց տարի հետո նկարիչը տեղափոխվում է Ամստերդամ, որը Հոլանդիայի առևտրական և արդյունաբերական խոշոր կենտրոնն էր: Նա շփվում է ժողովրդական լայն խավերի հետ, լինում արհեստավորների շրջանում, ուսումնասիրում կյանքը և վերարտադրում իր ստեղծագործություններում: Սակայն նրա արվեստը չէր համապատասխանում բուրժուազիայի ճաշակին և շահերին: Շուտով սկսվում են Ռեմբրանդտի նյութական ծանր օրերը: Աղքատության մեջ մոռացված նկարչի հոգեկան տանջանքները վերջանում են նրա մահով:

Ռեմբրանդտի հարուստ ստեղծագործության մեջ յուրահատուկ տեղ է գրավում դիմանկարը: Հենց իր մոր, որդու, լավագույն բարեկամներից մեկի՝ Սիքսի և բազմաթիվ այլ դիմանկարներ: Դրանցում նկարիչը արտաքին բացառիկ նմանության հետ մեկտեղ տալիս է նրանց հոգեկան բնութագիրը:

Ռեմբրանդտի դիմանկարչական ստեղծագործությունների շարքում հատուկ տեղ են գրավում ինքնանկարները, որոնցում նա մեծ վարպետությամբ պատկերել է իր կյանքի դժվարին ուղին:

Ռեմբրանդտի ստեղծագործության արժեքը նրա հարուստ բովանդակության, կյանքի ճշմարտացի պատկերման և բարձր վարպետության մեջ է: Նրա անունը դուրս է եկել իր հայրենիքի սահմաններից և արվեստի պատմության մեջ գրավում է պատվավոր տեղ:

Սովետական ժողովուրդը բարձր է գնահատում հոլանդական ժողովրդի տաղանդավոր զավակ Ռեմբրանդտի արվեստը:

*Մ. ՂԱԶԱՐՅԱՆ*

# ՀԱՅՐԵՆԻ ԵՐԿԻՐ

Այս տարի Երևանի, Կիրովականի, Ծաղկաձորի և այլ ճամբարներում տեղի ունեցան պիոներների և դպրոցականների գեղարվեստական ինքնագործունեության օլիմպիադաներ: Պետք էր տեսնել, թե որքա՜ն շնորհալի երեխաներ ցույց տվեցին իրենց հիանալի ընդունակությունները: Նրանցից շատերը հանդես եկան սեփական ստեղծագործություններով:

Տպագրում ենք Երևանի Մոլոտովյան ռայոնի տասներորդ քաղաքային ճամբարի պիոներ, Սպենդիարովի անվան երաժշտական դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի Անահիտ Պողոսյանի «Հայրենի երկիր» երգը, որը Երևանի քաղաքային ճամբարների օլիմպիադայում առաջնություն է շահել:

Անահիտը և իր երկու քույրը կատարեցին նաև նրա «Գիշեր» երգը, որը նույնպես ջերմորեն ընդունվեց պիոներների կողմից:

*Խոսք Մ. ԿՈՐՅՈՒՆԻ*

*Երաժշտ. Ա. ՊՈՂՈՍՅԱՆԻ*

Հայրենի երկիր,
Ծաղկած Հայաստան,
Քո զավակն ենք մենք
Կամքով անսասան:

Շաչել են հազար
Հողմ ու փոթորիկ,
Բայց կանգնել ես դու
Սեգ ու անառիկ:

Քեզ փրկեց մահից
Ձեռքը ռուսական...
Ցնծա՛, դու ծաղկած
Մեր նոր Հայաստան:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «ԾԵՐՈՒՆԻ ԽՈՏՏԱԲԻՉԸ»

Գետում լողանալիս, պիոներ Վոլկան գտավ մի խորհրդավոր անոթ: «Ի՞նչ կարող է լինել այնտեղ» մտածեց նա: Տուն հասնելուն պես Վոլկան բաց արեց անոթը: Եվ ո՜վ զարմանք. այնտեղից դուրս եկավ մի ծերունի: Նրա մորուքն այնքա՜ն երկար էր, որ մինչև գետին էր հասնում: Տղան սկզբում վախեցավ, բայց ծերունին հայտնեց, որ ինքը հայտնի Ջին Խոտտաբիչն է, ապա պատմեց, որ երկար ժամանակ բանտարկված է եղել այդ անոթում:

Վոլկան պիտի գնար աշխարհագրության քննության: Ծերունին խորհուրդ տվեց, որ նա բոլորովին չանհանգստանա: Նրանք միասին կգնան քննության: Վոլկայից բացի իրեն ոչ ոք չի կարող տեսնել. կմտնի դասարան և կհուշի: Վոլկան չհամաձայնեց: Երբ տղան վերցրեց հարցատոմսը և պատրաստվեց պատասխանելու, աներևույթ ծերունին հուշեց.

— Երկիրը կանգնած է վեց փղի վրա, իսկ փղերը կանգնած են մի կրիայի մեջքին:

Վոլկան ստիպված կրկնեց այդ անհեթեթությունը: Բոլորը ծիծաղեցին:

Ջինի առաջին ծառայությունը մեծ վնաս է տալիս Վոլկային. քննությունը հետաձգում են աշնանը: Բայց ծերունին անբաժան է Վոլկայից: Նա երդվել էր իրեն ազատողին երջանկացնել: Հանկարծ նա իր մորուքից մի մազ է պոկում, և տղայի աչքի առջև կանգնում են հոյակապ պալատներ:




— Այս բոլորը քոնն են,— ասում է Խոտտաբիչը,— ես ուզում եմ աշխարհի ամենահարուստը դարձնել քեզ:

— Ինչի՞ս են պետք պալատները. ես, ինչ է, ակո՞ւմբ եմ, հիմնա՞րկ եմ, թե՞ մանկապարտեզ:

Ծերունին չի կարողանում նրան հրապուրել նաև գանձերով: Վոլկան չի ուզում առանց աշխատանքի դառնալ անվանի մարդ: Իսկ Ջինը չի կարող հասկանալ, թե ինչու է Վոլկան հրաժարվում այդ բոլորից:

Ահա նրանք նստած են Մոսկվայի ստադիոնում: Մարդիկ լարված հետևում են խաղին: Ծերունին կարծում է, որ ֆուտբոլ խաղացողները գնդակի համար են կռվում և հրապարակը լցնում է քսանմեկ նույնանման գնդակներով:

Վոլկան ու Ջինը շրջում են քաղաքում: Երկար ժամանակ անոթի մեջ փակված Խոտտաբիչին զարմանալի են թվում գիտության և տեխնիկայի նվաճումները:

Հրաշագործ ծերունին իսկական հրաշքներ է տեսնում սովետական երկրում. հրաշքներ, որոնք ստեղծվում են ոչ թե կախարդական զորությամբ, այլ աշխատավոր մարդկանց ձեռքերով: Ծերունի Ջինը վճռում է Վոլկայի հետ դպրոց գնալ, սովորել և հասկանալ այդ ամենը:

Գրող Լ. Լագինը «Ծերունի Խոտտաբիչը» հեքիաթ-վիպակում վեցերորդ դասարանի աշակերտ Վոլկայի օրինակով ցույց է տալիս, որ սովետական մարդիկ չեն հավատա ինչ-որ կախարդական զորությունների ու հրաշքների: Նրանք իրենց հարստության և երջանկության աղբյուրը տեսնում են միայն ազնիվ ու անձնվեր աշխատանքի մեջ:

Կարդացեք Լ. Լագինի «Ծերունի Խոտտաբիչը» հեքիաթ-վիպակը:

Լ. ԲԱՌՆԱԿՅԱՆ

## «ՀԵՐԿՈՒԼԵՍՅԱՆ ՍՅՈՒՆԵՐ» ԵՎ «ՋԻԲՐԱԼԹԱՐ»

Կ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

(Աշխարհագրական գիտությունների թեկնածու)

Հին հույների մոտ մեծ ժողովրդականություն վայելող դյուցազներից էր Հերկուլեսը: Նրա անվան հետ կապված առասպելները պատկերում են նրան որպես ուժի և վեհության մարմնացում: Հին հույները Հերկուլես դյուցազնի անունով «Հերկուլեսյան սյուներ» կոչեցին այժմյան Ջիբրալթարի նեղուցի զույգ ափերին ընկած ժայռերը, այն է՝ Ջիբրալթար հրվանդանը և նրա դիմաց ընկած Ջիբել-Մուսան: Նրանք կարծում էին, որ այդ սյուները հանդիսանում են աշխարհի սահմանը և իբր թե դրանք կանգնեցված են հունական հերոս Հերկուլեսի կողմից այն ժամանակ, երբ նա կատարել է իր ճանապարհորդությունը Հունաստանից դեպի արևմուտք: Հույների կարծիքով, «Հերկուլեսյան սյուները» նա կանգնեցրել է Իսպանիայի հարավային վերջավորության վրա, որտեղ դադարեցրել է իր արկածային արշավանքները: Սյուների վրա նա գրել է՝ «Մի անդր ևս» բառերը, որոնք փոխաբերա-

կան իմաստով նշանակում են՝ «Մարդկային կատարելության վերջին ծայրը»:

Սակայն «Հերկուլեսյան սյուներ» անունը հետագայում դարձավ Ջիբրալթար: Դա էլ հետևյալ կերպ կատարվեց: Միջին դարերում, երբ արաբները դուրս եկան արաբական թերակղզուց և շարժվեցին դեպի Հյուսիսային Աֆրիկա, իսկ այնտեղից էլ անցան Պիրենեյան թերակղզի, արաբական զորավար Տարիկը այդ թերակղզու հարավային ծայրում, ժայռի վրա, կառուցել տվեց մի բերդ, որն այժմ էլ կանգուն է և կոչվում է «Մավրիտանական ամրոց»: Այդ օրվանից սկսած արաբները ժայռը կոչեցին «Ջեբել-Տարիկ» («Տարիկի սար»):

Արաբները մոտ 800 տարի շարունակ տիրեցին Իսպանիային. բայց նրանց նահանջից հետո էլ ժայռի անունը մնաց նույնը, սակայն քիչ աղավաղված ձևով՝ արդեն որպես «Ջիբրալթար»:

Ներկայումս այդ անունը կրում են Եվրոպան Աֆրիկայից բաժանող նեղուցը և Պիրենեյան թերակղզու ծայր հարավում ընկած ժայռը, որի լանջերին էլ գտնվում է անգլիական Ջիբրալթարը:

Այդ գաղութը գրավում է ընդամենը հինգ քառակուսի կիլոմետր տարածություն և ունի 25 հազար բնակիչ: Նա 500 մետր լայնություն ունեցող չեզոք գոտիով անջատված է Իսպանիայի տերիտորիայից: Անգլիայի համար այդ գաղութը ծառայում է որպես ամրոց և ռազմա-ծովային կարևորագույն բազա Միջերկրական ծովի արևմտյան ելքի՝ Ջիբրալթարի սյուների վրա: Հեռավոր տեղեր գնացող նավերի մեծ մա-



*Ջիբրալթար գաղութը։*

սը այցելում է այդ նավահանգիստը, որտեղից վերցնում են քարածուխ, նավթ և այլ մթերքներ:

Ջիբրալթար նավահանգստի նշանակությունն այնքան մեծ է, որ նրա անունը ծովային ամրոցի սիմվոլ է դարձել: Դրա համար էլ մի այլ նավահանգստի կարևորությունը ընդգծելու համար նրա անվանը սովորաբար ավելացնում են «Ջիբրալթար» խոսքը: Այսպես օրինակ՝ Կարմիր ծովի դռների մոտ գտնվող Ադեն նավահանգիստը հաճախ «Արաբական Ջիբրալթար» են անվանում, իսկ Սինգապուրին՝ «Արևելքի Ջիբրալթար»:




**ԿՐՈՍՎՈՐԴ**



Ուղղահայաց—2. Հայ նշանավոր գրող, 3. «Թշվառներ» վեպի հերոսներից մեկը, 4. Ռուս նշանավոր նկարիչ, 5. Անապատ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում, 6. Գետ Գերմանիայում, 7. Սովետական Միության Հերոս, գվարդիայի շարքային, 12. Իսպանական նշանավոր աշխարհագրագետ-նահապարհորդ, 13. Լեռնաշղթա Միջին Ասիայում, 14. Լիճ Սովետական Միությունում, 15. Ծովածոց հարավային Սախալինում, 19. «Իլիականի» հերոսներից, 21. Սովետական նշանավոր բուսաբան, 23. Ռուս հանճարեղ կոմպոզիտոր, 24. Ռուսական կուլտուրայի ականավոր գործիչ, արվեստի քննադատ, 26. Քաղաք, որտեղ պիոներ Սաշա Չեկալինը ընկավ հերոսի մահով, 27. Հրաբխային կղզի Հնդկական օվկիանոսում:

Հորիզոնական—1. Անտառային գոտի Սովետական Միությունում, 8. «Երիտասարդ գվարդիա» վեպի հերոսուհիներից, 9. Սովետական ականավոր ագրոքիմիկոս, 10. ՍՍՌՄ չմշկավար կին չեմպիոն, 11. Գործող հրաբուխ Եվրոպայում, 13. Բելոռուսական գրող,

16. Նորվեգիական նշանավոր բևեռախույզ, 17. Անգլիական մեծ գիտնական-բնագետ, 18. Քարատեսակ, 20. Ռուս մեծ ծովակալ, 22. Արվեստներից ամենատարածվածը, 25. «80 հազար կիլոմետր ջրի տակ» վեպի հերոսներից, 26. Ռուս մեծ գրող, 28. Սովետական Միության Հերոս պիոներ, 29. Ռուս մեծ զորավար, 30. Գետ Էստոնիայում

*Կազմեց՝ Գր. ՇՈՒՇԱՆՅԱՆ*

## ՓՈՐՁԵՑԵՔ ԿԱՐԴԱԼ

Բանալու վրայի ճառանկյունու օգնությամբ փորձեցեք կարդալ ռուս մեծ բանաստեղծի ազգանունը:



*Կազմեց՝ Գ. ՄԱՆՈՒԿՅԱՆ*

## ՄՏԱԾԻՐ ԵՎ ԳՏԻՐ

1. Երբ քամի չի լինում, ծուխը ծխնելույզներից համարյա ուղղահայաց է բարձրանում. ի՞նչն է պատճառը:

2. Ինչո՞ւ բաղերը և սագերը ճայլում են օրօրվելով:

3. Ինչո՞վ բացատրել, որ եռացրած ջուրն ավելի լավ է հանգցնում կրակը, քան թե սառը ջուրը:

4. Լուսնի վրա չկա և չի կարող լինել մթնոլորտ. ինչո՞ւ:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. Կ. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ

Չորրորդ էջը՝ նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ




*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.

*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.

*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 12713: Պատվեր 1268: Տիրաժ 5000: Տպագրական 2 1/4 մամուլ: Ստորագրված է տպագրության 27/IX 1954 թ.:*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող., № 65, 1954 թ.:*



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## ԸՄԲՈՍՏ ՊՈԵՏԸ

Նիկոլայևյան դաժան ռեժիմի օրերին էր: Կալվածատիրուհի Արսենևան ամենափոքրիկ թերացումների համար ծեծել էր տալիս ճորտերին: Մի օր էլ, երբ ճորտերին տանում էին ծեծելու, հանկարծ բակ է վազում մի փոքրիկ տղա և լալով բացագանչում.

— Տատի՛կ, ես թույլ չեմ տա ծեծել, չէ՞ որ դրանք էլ մեզ նման մարդիկ են:

Տատը բարկանում է անհնազանդ թոռան վրա, բայց դադարեցնել է տալիս ծեծը: Այդ փոքրիկ տղան Միշելն էր՝ հետագայում ռուս մեծ բանաստեղծ Միխայիլ Յուրևիչ Լերմոնտովը:

Լերմոնտովը ծնվել է 1814 թվականի հոկտեմբերի երեքին, Մոսկվայում: Երեք տարեկան հասակում զրկվել է մորից: Նրան խնամել ու դաստիարակել է տատը, որը հարուստ կալվածատիրուհի էր: Տատի կալվածքում Միշելը շփվում է գյուղի



երեխաների հետ, իր նոր դայակից լսում Ռազինի, Պուգաչևի պատմությունները: Գյուղում նա ականատես է լինում ճորտերի տանջանքներին և խորապես մտահոգվում նրանց ծանր դրությամբ:

Լերմոնտովը ստացել է լավ կրթություն. շատ կարդացած էր, նվագում էր ջութակ ու դաշնամուր, նկարում, հեշտությամբ լուծում մաթեմատիկական բարդ խնդիրներ, նույնիսկ երաժշտություն հորինում: 1828—31 թվականներին գրել է ավելի քան 250 բանաստեղծություն, 15 պոեմ, 3 դրամա, բայց տպագրության չի հանձնել: Թե՛ Մոսկվայի համալսարանում, թե՛ զինվորական դպրոցում սովորելու և այնուհետև զնդում ծառայելու ժամանակ նա քչերին էր հայտնի:

Վրա է հասնում 1837 թվականը: Հունվարի քսանին, ցարական դահիճների կազմակերպած մենամարտին զոհ է դառնում հանճարեղ Պուշկինը: Եվ ահա պոռթկում է Լերմոնտովի զգայուն սիրտը: Նա գրում է «Պոետի մահը» բանաստեղծությունը, որը ձեռագիր տարածվում է ամենուրեք և միանգամից փառք բերում պոետին: Դրանով նա մերկացնում է մեծ Պուշկինին սպանողներին, առանց վախի ժողովրդին կոչում է ազատության: Սա չլսված խիզախություն էր: Ցարական կառավարությունը Լերմոնտովին աքսորում է Կովկաս և առիթներ որոնում մեջտեղից վերացնելու ըմբոստ պոետին: Վերջապես հաջողվում է ոմն Մարտինովի գրգռել Լերմոնտովի դեմ: Եվ 1841 թվականի հուլիսի 15-ին, Պյատիգորսկի մոտ, մենամարտի ժամանակ ընկավ պոետը:

Չկա մի գրագետ մարդ, որ կարդացած չլինի մեծ պոետի ջերմ բանաստեղծությունները, «Մծիրին», «Դևը» և կովկասյան մյուս սքանչելի պոեմները, «Մեր ժամանակի հերոսը», «Դիմակահանդեսը» և մյուս ստեղծագործությունները:

Այս տարի լրանում է Լերմոնտովի ծննդյան 140-ամյակը:

## ՎԱԼԵՐԻ ԲՐՅՈՒՍՈՎ
(1873—1924)

«Ես միշտ ասել եմ՝ Բրյուսովը Ռուսիայի ամենակուլտուրական գրողն է: Ավելի լավ գովեստ ես չգիտեմ: Դա անկեղծ է»: Այսպես է արտահայտվում Գորկին 20-րդ դարի ռուս նշանավոր բանաստեղծ Վալերի Բրյուսովի մասին:

Բրյուսովը ծնվել է 1873 թվականին, Մոսկվայում, ունևոր վաճառականի ընտանիքում: Բանաստեղծություն գրելու փորձեր է արել դեռ ութ տարեկան հասակից: Ավարտել է Մոսկվայի համալսարանի պատմաֆիլոլոգիական ֆակուլտետը:

Բրյուսովը ստեղծագործական բարդ ճանապարհ է անցել: Վերջում շրջադարձ կատարեց դեպի ռեալիստական գրականությունը: Դրա լավագույն արտահայտությունն են «Քաղաքին», «Քարտաշ» բանաստեղծությունները:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո, Բրյուսովը կանգնեց երիտասարդ Սովետական ռեսպուբլիկայի կողմը և ակտիվ մասնակցություն ունեցավ կուլտուրական շինարարության գործում: Այս շրջանի ստեղծագործությունների մեջ նա փառաբանում է ռևոլյուցիան ու Լենինին:

Բրյուսովը շատ հայտնի է իբրև գրականագետ և բանաստեղծ-թարգմանիչ: Իր կյանքի վերջին տարիներին նա թարգմանում էր Վիրգիլիոսի «Էնեական», Գյոթեի «Ֆաուստ» գործերը և այլն:



Վալերի Բրյուսովը մեծ գործ է կատարել հայ գրականությունը թարգմանելու համար: Առաջինը նա էր, որ բազմադարյան հայ պոեզիան ներկայացրեց ռուս ընթերցողին: Համաշխարհային պատերազմի տարիներին նա կազմեց հայ պոեզիայի անթոլոգիան: Այս գործին նա մոտեցավ որպես իսկական բանաստեղծ ու գիտնական: Նախքան թարգմանության անցնելը Բրյուսովը ուսումնասիրեց հայոց լեզուն, հայ ժողովրդի պատմությունն ու գրականությունը, ճանապարհորդեց Հայաստանում: 1916 թվականին լույս տեսավ այդ ժողովածուն «Հայկական պոեզիան հնագույն շրջանից սկսած մինչև մեր օրերը — ռուս բանաստեղծների թարգմանությամբ» վերնագրով: Առաջաբանն ու ծանոթագրությունները գրել էր ինքը Բրյուսովը: Նա կազմել է նաև «Հայ ժողովրդի պատմական բախտի տարեգրությունը վեցերորդ դարից (մեր թվարկությունից առաջ) մինչև մեր օրերը»:

Հայ ժողովուրդը մեծ երախտագիտությամբ ու սիրով է հիշում ռուս բանաստեղծին ու գիտնականին:

ԳԻՆԸ 2 Ռ.

# ԵՐԿՈՒ ԲՆԱՍԵՐ















Շաղ է տվել սերմը հողում,
Բայց թե աճե՞ց՝ չի էլ հոգում:

Ի՞նչ է ծլել՝ ցորեն, խաղող,
Մոռացել է, տարված խաղով:

Բոյ են քշել փուշն ու տատասկ,
Կողքին գրած, թե՝ ձեռք չտա՛ս:

Մի տես, աղջիկն այս բնասեր
Ի՞նչ սիրով է գործի անցել:

Բույսն է լցնում, հետո ջրում
Եվ օրագրի մեջ է գրում...

Ի՞նչ եմ ասել այսպես բանին.
Թե կարող ես՝ հողից հանի՛...

Խ. ՀՐԱՉՅԱՆ